



# ԱՆՁՐԵՎԻ ՀՐԱՎԵՐ

*ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ*

*Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

Ճաքել է հողի շուրթը շոգից,
Տնքոց է լսվում հողի խորքից,
Ամպերը վերում օրորվելով,
Այդ տնքոցի հետ գլորվելով,
Սուրհանդակների թանակ վարձած,
Կարևոր լուր են ուղարկում ցած,
Թե՝ մենք, ամպերս փխրուն ու խեղճ,
Ապրելով նույնպես գերության մեջ
Այս մեծազոր ու մեծ Արևի,
Տառապանք տարանք հազար ձևի։
Արեգակնային նիզակներով
Մենք կայծակվեցինք հազար տեղով,
Եվ մեր մարմինը, և մեր հոգին,
Չդիմանալով այդ տանջանքին,
Ահա լցվել են հնոց կարգով
Որոտմունքով ու տաք արցունքով։
Մենք պիտի իջնենք, ամպերն ասին,
Որ ապրենք հողի հետ միասին։
Ծիծեռնակները այս լուրն առան,
Սև ու սպիտակ նետեր դառան,
Եկան, ասացին ճնճղուկներին,
Եվ ճնճղուկները՝ մժղուկներին,
Եվ մժղուկները հողում քնած
Որքան որ կային շունչ-արարած,
Բոլորին մեկ-մեկ լուրը տարան,
Թե ամպերն ահա խիստ վարարած,
Ձեռքներին շանթե մտրակ առած,
Ջաղկելով երկնի դեմքը մթին,
Դղորդ իջնում են ահա գետին։

Եվ այս որ լսեց, հողը վախից
Նոր ճաքեր տվեց հազար տեղից։
Եվ ամպը կախվեց, կախվե՜ց, կախվե՜ց,
Եվ ամպից առատ արցունք մաղվեց,
Եվ իրար եկան շուրթերը չոր,
Եվ առատ խմեց հողը տոչոր։
Եվ հողի խորունկ խորքում քնած
Որքան որ կային շունչ-արարած,
Բոլորը հողի երես ելան,
Բոլորը՝ ցամաք-պապակ բերան,
Ելա՜ն, խմեցին առատ- առատ,
Խմեցին երկնի ցողն անարատ,
Եվ երանությամբ տաք գգվեցին՝
Մեծերը՝ փոքրին, փոքրը՝ մեծին։

Հետո Արևն ելավ կամաց,
Ծպտաց ամպերի լաթին քամած,
Հետո ավելի ներքև նայեց,
Թաց խոտ ու ծաղկին մեղմ փայփայեց։
Հետո ամպերին ասաց՝ թե դուք
Չեք կարող ապրել առանց արցունք։
Ավելի լավ է՝ ես ծովերից,
Օվկիանոսներից ու գետերից
Ձեզ համար արցունք բերեմ մի քիչ,
Որ չանհետանաք դուք երերից։
Արևի այդքան քնքշությունից
Շառագունեցին ամպերը խեղճ
Եվ որոշեցին ապրել կրկին
Մեծ Արեգակի գերության մեջ։

# ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

(ԾՆՆԴՅԱՆ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



Նրա անունը շատ վաղուց դուրս է եկել ոչ միայն մեր հանրապետության, այլև Սովետական Միության սահմաններից: Տասնյակ լեզուներով թարգմանվել են «Սևանի ափին» և «Հովազաձորի գերիները» վեպերն ու որսորդական գրավիչ պատմվածքների պրակները:

Վախթանգ Անանյան անունը լսելիս մենք ամենից առաջ հիշում ենք Հայաստանի բնությունն իր անկրկնելի գեղեցկություններով: Գրողը հենց այդ էլ կամեցել է՝ իր ընթերցողներին ճանաչել ու սիրել տալ հայրենի բնությունը, մղել պահպանելու, հարստացնելու և ավելի գեղեցկացնելու այն:

Որսորդի հրացանն ուսին, ձկնորսական կարթը ձեռքին կամ ճանապարհորդական պայուսակը մեջքին, նա ոտքի տակ է տվել ամբողջ Հայաստանը, նրա բոլոր անկյունները զննել, ականատես և մասնակից եղել շատ ուշագրավ դեպքերի ու արկածների, ծանոթացել ու զրուցել անհամար բանիմաց ու փորձառու մարդկանց հետ, այնուհետև անանյանական գրավչությամբ ու անանյանական համ ու հոտով պատմել իր ընթերցողներին, բաժանել նրանց հետ իր հիացմունքն ու մտահոգությունները:

Անանյանը չի սահմանափակվել միայն գրքեր գրելով: Հայրենասեր գրողը նաև եռանդուն կազմակերպիչ է: Նրա նախաձեռնությամբ մեր հանրապետությունում սկիզբ առավ վայրի մրգատու ծառերը պատվաստելու, վայրի կենդանիներին պաշտպանելու և հայրենի գետերը ձկնառատ դարձնելու պիոներ-դպրոցական շարժումը:

Անանյանի առաջին պատմվածքը լույս է տեսել հիսուն տարի առաջ, «Պիոներ» ամսագրում (նախկին՝ «Հոկտեմբերիկ»): Այնուհետև իր 50-ամյա ողջ ստեղծագործական բեղմնավոր կյանքի ընթացքում նա շարունակել է իր եռանդուն մասնակցությունը բերել ամսագրի աշխատանքներին՝ իբրև գրող և խմբագրական կոլեգիայի անդամ:

Սիրելի գրողը ավարտել է մի նոր վեպ՝ իր կյանքի վեպը, «Հին վրանի փոքրիկ բնակիչները» վերնագրով, ուր ցույց է տալիս, թե կյանքի ինչ ճանապարհի անցնելով, հովիվ որբ պատանին դարձավ գրող Վախթանգ Անանյան:

Ստորև տպագրում ենք մի հատված այդ նոր վեպից, «Պիոներ» ամսագրի բազմահազար ընթերցողների, խմբագրության և խմբագրական կոլեգիայի անունից, խորին շնորհակալությամբ, շնորհավորելով սիրելի գրողին իր մեծավաստակ կյանքի 70-ամյակի առթիվ, ցանկանալով նրան քաջառողջություն և ստեղծագործական անսպառ եռանդ, հուրախություն բազմացող ու բազմացող իր ընթերցողների բանակի:

# ՀԻՆ ՎՐԱՆԻ ՓՈՔՐԻԿ ԲՆԱԿԻՉՆԵՐԸ

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

## ՄԱՆԿԱԿԱՆ ԽԱՆԴ

*Մայրս խորթ էր: Եվ որովհետև խորթ էր, ինչ էլ որ անում էր, ինձ խորթ էր թվում: Ինձ թվում էր, որ հետո լավ է վարվում իր խորթությունը ծածկելու համար: Ինձ թվում էր, որ այն, ինչ անում է ինձ համար, ուրիշներին ցույց տալու համար է անում. «Տեսեք՝ հարազատ երեխայիս տեղ եմ ընդունում...»*

*Խե՜ղճ իմ մերացու, կասկածը սիրտս էր մտել ու դուրս չէր գալիս: Դրանից էլ մենակ էի զգում ինձ մեր տանը:*

*Հայրս սիրում էր ինձ. ես նրա վերջին ժառանգն էի: Բայց հոր երեսն ո՞վ էր տեսնում. ամեն լուսադեմի, գործիքներն առած, գնում էր Դիլիջան՝ պատ շարելու, երեկոյան վերադառնում էր հոգնած ու անտրամադիր: Ինձ սիրող մյուս հարազատս իմ մեծ եղբայր Վահանն էր. նա էլ գնացել էր Բաքու, «փող աշխատելու»: Մյուսը՝ քույրս էր, նրան էլ մարդու էին տվել «Կոողի աշխարհում»: Եկան այդ կոռները Սևանի ափից, սահնակներին նստած, մեծ-մեծ մուշտակները հագներին ու տարան իմ քույր Աստղիկին: Տարան անխիղճները, բոլորովին նկատի չառան, որ*



Նրա որբ եղբայրը գլուխը թաղած հարդի մեջ, հոնգուր-հոնգուր լաց է լինում հին մարագում...

Տանը մնացել էի մենակ, իմ խորթ մոր հետ: Խեղճ կինը որքան լավ էր հետս վարվում, ես այնքան դառնում էի լռակյաց ու ինքնամփոփ:

«Էլի վերմակի տակ քչփչում են»: Տրաքվում էի խանդից. ի՞նչ են խոսում այդքան երկար: Ես գետնին էի քնում, ծնողներս՝ փայտե լայն թախտին: Երբ, մայրս կենդանի էր, ինձ իր ծոցն էր քնեցնում: Առանց մորս ես քնել չէի կարողանում. այդպես էի սովորել օրորոցից դուրս գալուց հետո: Ու միշտ ստինքը բռնած էի քնում, ուրիշ կերպ քնել չէի կարողանում: Բայց աստված ինձ անջատեց իմ մորից, նրան տարավ երկինք (այդպես էին ասում), իսկ ինձ թողեց մենակ:

Շաբաթներ անեց, մինչև որ ես վարժվեցի միայնակ պառկելու: Պառկում էի, բայց այլևս չկար մայրական գոլը վերմակի տակ, չկար մայրական բույրը: Հիմա որքան էլ հոգնած լինեի օրվա աշխատանքից և խաղերից, հաճախ քունս չէր տանում, այնպիսի մենակություն էի զգում, որ սիրտս ճաքում էր: Իսկ նրանք դարձյալ իրար գտել են ու քչփչում են մթության մեջ՝ իմ ծերունի ածդահա հայրը և իր ջահել ու սև աչք-ունքերով կինը: Ինչո՞ւ են գաղտնի խոսում, ինչո՞ւ ինձ ոչինչ չեն ասում:

Անուշս տվին:

Ականջներս սրեցի ու ամբողջովին դարձա ուշադրություն:

— Մեր չի ասում, թող շուն ասի... Մի բան ասի:

Ու հեկեկում է իմ մերացուն:

Իսկապես, ահա մի տարի է իմ մայրն է համարվում, բայց չեմ կարողանում ոչ նանի ասել, ոչ մայրիկ:

— Թող ձալո ասի, թող մի բան ասի... ամեն բան անուն ունի, մենակ ես եմ, որ քո տղի համար ոչ մի անուն չունեմ,— շարունակում էր իր գանգատը իմ մերացուն:

— Դե լավ, երեխա է, էլի՛, երևի ամաչում է,— աշխատում էր հանգստացնել հայրս:— Առաջին օրը որ չի ասել, հիմի ամաչում է...

Հաջորդ օրը հանդում այդ մասին էի մտածում: Մտածում էի՝ նանի ասեմ և այդպես էլ վճռեցի: Բայց երբ երեկոյան տուն եկա, հաց դրեց առաջս, ուզեցի մի բան հարցնել, դարձյալ չկարողացա դիմել իրեն, ինչպես իմ մորն էի դիմում, թե՝ «Նանի, ապին ուշ կգա՞...»

Առանց դեմքին նայելու, առանց նանի ասելու, ուղղակի հարցրի.

— Ապին ե՞րբ է գալու:

Չլսելու տվեց: Երբ հարցս կրկնեցի, վշտոտ հայացքով նայեց ինձ ու կամաց.

— Ինձ ես հարցնո՞ւմ...

Ինձ թվաց, որ ուզում է ասի շարունակությունը, ուզում է ճչա՝ «Բա ես անուն չունե՞մ»: Բայց զսպեց իրեն, շուռ եկավ և գոգնոցի փեշը տարավ աչքերին...

Խե՜ղճ խորթեր... Հիմա եմ հասկանում, թե ինչքան ծանր բան է խորթ լինելը: Հոգիդ հանիր կրակը գցիր, միևնույնն է, չեն հավատա:

## ԿԱՐՈՏ

Այնպես եմ կարոտել իմ Աստղիկ քույրիկին, որ քիչ է մնում, անասուններին թողնեմ այստեղ՝ Նովավորի լանջին արածելիս ու փախչեմ գնամ Կոռյի աշխարհը:

Նստել եմ լեռնամատի ամենաբարձր թմբին ու նայում եմ Դիլիջանի անտառոտ ձորին: Դիմացիս լանջերը ևս պատած են մթին ծմակներով, որոնք գնալով դեպի վեր նոսրանում են ու դիմացիս Գյոլդաղի (Կապույտ սար) գոտկատեղում վեր են ածվում թփուտների: Նրանցից վերև զմրուխտ լանջեր են, որոնց փոքր գոգավորությունների վրա, հեռու-հեռվում՝ նշմարվում են Քոի հովտից եկած խաշնարածների խայտաբղետ վրանները: Նրանցից վերև, լեռների ուսը մի տեղ թամբանման է և այդ թամբից դեպի աջ ձգվում են նոր լեռներ, որոնք շղթա են տալիս դեպի

արևմուտք: Դրանք էլ Մեյդանի լեռներն են, որ քարտեզի վրա Փամբակի լեռներ են կոչվում:

— Էն թամբով անց կացանք ու մտանք Կոռի աշխարքը,— մի անգամ մատով ցույց էր տվել ու պատմել իմ ընկեր Գրիգորը. վայրի տանձ էին տարել Սևանի գյուղերում հացահատիկի հետ փոխանակելու:

Այդ թամբը, որ Սեմյոնովկայի լեռնանցքն էր, ես նշան էի արել: Ուրեմն, իմ քույր Աստղիկը այդ լեռների հետևում է, իսկ նրան գտնելու համար պիտի անցնել այդ լեռնանցքով:

Սպասիր մի կարգին նշան անենք: Թամբից մի ձորակ իջնում է ուղիղ Գոլովինոյի վրա: Այդ ձորակում անպայման առու կլինի: Ուրեմն, եթե Գոլովինոյից ընթանամ այդ առուն ի վեր, կհասնեմ թամբին, շուռ կգամ մյուս երեսն ու կմտնեմ Կոռի աշխարհը:

Սիրտս ծակեց այդ խոսքից, ո՛նց թե Կոռի աշխարհը: Ախր Սևանի բնակիչներին մենք արհամարհանքով ենք կոռ ասում: Ո՞նց թե կոռ, ախր այնտեղ իմ քույրն է ապրում, իմ բարի, իմ սիրող քույրը: Եվ քանի որ իմ քույրն այնտեղ է ապրում, ինձ համար Սևանն այլևս կոռի աշխարհ չի:

Ա՜խ, անցնեի դիմացս փակող լեռնաշղթան ու



գնայի հասնեի իմ Աստղիկ քույրիկին... Այնպես եմ կարոտել, որ մեր տունը, իմ ծննդավայրը ատելի են դառել ինձ:

Մեծ տղա էի, բայց ուր գնում էր՝ շալակած էր տանում ինձ. «Ապերիկիս ոտքը փուշ կմտնի...» Նույնիսկ Ջուխտակ աղբյուրների մոտ նոր գլխիկները հանած դաղձ քաղելիս՝ ես շալակին կպած ննջում էի: Մորի հավաքելիս էլ էի շալակին լինում, բանջարեղեն հավաքելիս էլ, ձորի աղբյուրից ջուր բերելիս էլ...

Մի անգամ մեր տանը հավաքված գորգ էին գործում: Դուրս փախա ու կոխ բռնեցի Պապանի Ռուբենի հետ: Հենց նրան դրի տակս՝ գագաթիս մի ծանր բան հարվածեց և գլուխս տաքացավ. Ռուբենի մեծ եղբայր Մաթոսը թիակով խփել էր գլխիս: Վզովս տաք հեղուկ էր ցած վազում. ձեռք տվի՝ արյուն էր: Սուսուփուս գնացի տուն: Հենց դուռը բաց արի՝ քույրս ճչաց.

— Վա՜յ, երեխին մորթել են...

Երևի մորթածի նման եմ եղել, քանի որ արյունը գագաթիցս երկու կողմերով ցած էր հոսել ու պատ տվել վզովս:

Հասավ ինձ, ծնկներս գրկեց և ուշքը գնաց:

Նոր եմ հասկանում, թե ինչ ասել է քույր: Հասկանում եմ, երբ արդեն սարերի հետևում է...

Իսկ ես՝ ապերախտս, ինչպե՞ս էի վարվում հետը: Եղբայրավարի:

Սևանի ափից հերանց էր եկել: Կարոտած գրկեց համբուրեց, փնջավոր կոնֆետներ տվեց, որի համար աշխարհքի չափ ուրախացա: Իսկ մյուս օրը ցույց տվեց իր նոր հագուստները:

— Բա՛, տես ի՜նչ սիրուն շորեր է առել իմ մարդը...

Հոգուս հետ խաղում էր:

Այն ժամանակ ես վեց տարեկան էի և մայրս կար: Քույրս շարունակում էր բարկացնել ինձ:

Ջղայնացա, համբերությունս վերջացավ:

— Ուրեմն, դու սիրուն կոշիկներ ես հագնելու, իսկ ես քոլամանի տրեխնե՞ր,— ասացի ու կռպալս վրա բերի ամենղ պարծեցող քրոջս ուսին:

— Տո՛ բեմուրազ, տո՛ թիկունքդ տախտակին դնեմ, էս ի՞նչ արիր,— անիծեց մայրս՝ քրոջս ուսը բացելով: Հարվածի տեղը կարմրել էր, հետո կապտեց: Իսկ քույրս անձայն արտասվում էր ու արցունքները գլորվում էին նրա այտերով...



# ՄԱՐՄԱՐԻԿ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Հանքավանի գրկում շաղոտ,
Կանաչ լեռան ոտքի տակ,
Մաղիկներին ճամփույր տալով
Կարկաչում է մի գետակ:
Բխում է նա ժայռից մարմար՝
Բարձունքներում անառիկ,
Փայլ է տալիս արևի տակ
Եվ կոչվում է Մարմարիկ:

Արձագանք է տալիս ուրախ
Պիոներական շեփորին,
Երբ մանկական երգն է զվարթ
Զնգում իր զով ափերին:
Գիշերները գիրկն է առնում
Երկինքն աստղե կամարով,
Ցերեկները ժպտում է վառ
Իր թափանցիկ մարմարով:
Բայց տխրում է ամռան վերջում

«Ա՜խ, էն ի՜նչ ղալաթ արի, քույրի՛կ ջան...» մըրմըտում եմ ես Նովավորի քարին նստած ու հայացքս դարձյալ այն լեռներին էր, որոնց հետև անհետացավ իմ քույր Աստղիկը...

«Չէ՜, պիտի գնամ... Տանն ո՞վ ունեմ, որ մընամ...» — ամուր վճռեցի ես ու վեր կացա:

Այդ գիշեր նրանց քչփչոցն այլևս չէր վրդովեցնում ինձ: Թող հա քչփչա հնամաշ վերմակի տակ, ես իմ փախուստի պլանն եմ կազմում...

## Ո՞ՆՑ ԸՆԿՆԵՄ ԿՌՈՅԻ ԱՇԽԱՐՀԸ

Հաջորդ օրը, որ հաց ու պանիր կերանք և վըրան ջուր խմեցինք Նովավորի աղբյուրից, հարցրի իմ ընկեր Գրիգորին.

— Գոլովինոյից մինչև Սեմյոնովկա մարդ ինչքա՞ն ժամանակում կհասնի:

— Ճամփով շատ երկար է: Մի տես, սարի դոշին քանի կեռման կա՜:

Խճուղու կեռմանները ուղիղ մեր սարի դիմաց են և այնքան պարզ են շեկին տալիս կանաչ լանջին, որ կարող ես որոշել նույնիսկ յուրաքանչյուր կեռմանի երկարությունը:

— Դե, մենք սելով էինք գնում, մինչև ճաշը հազիվ հասանք Սեմյոնովկա: Իսկ ձորով շատ կարճ է, ոնց որ էստեղից մինչև մեր գյուղը: Հը՞, ինչի՞ ես հարցուփորձ անում: Չլինի՞ թե միտքդ ծուռն է...

Ու իր մեծ-մեծ սև աչքերով զննում է դեմքս: Շփոթվեցի:

— Այսինքն որ գնաս, չես փոշմանի, Կռոյի աշխարքը մի ուրիշ աշխարք է, բոլորովին նման չի մերին:

— Այսինքն, ո՞նց...

— Էնպես, էլի՜... Տկլոր, առանց ծառի երկիր է, սարերի մեջտեղն էլ՝ մի մեծ ծով...

— Բա նրանք քոլ չունե՞ն,— զարմացա ես: Աչքս բաց էի արել՝ անտառ էի տեսել և չէի պատկերացնում, թե կարող է առանց անտառի երկիր գոյություն ունենալ:

— Տո շա՛շ,. որ քոլ ունենան, մեր քոլի թթու տանձին նռնահատ ցորեն կտա՞ն: Համա չտես ժողովուրդ են, հա՜,— ծիծաղեց Գրիգորը,— որ գյուղը մտնում էինք, երեխեքը ճանճերի պես վրա էին տալիս մեր սելին ու գոռում էին. «Գյադե՜ք, պանդա են բերել...» Պանդա նրանք մեր վայրի տանձին են ասում: Ու վազում էին հատիկ բերելու՝ որը մաղով, որը պղընձով, որը փեշով, որը փափախով: Համա կլպում էինք, հա՜...

Ու Գրիգորը մի արհամարհական ժպիտ ուղարկեց կռոյի երեխաների հասցեով:

— Իսկապես, մեր էս դեն գցելու տանձին ցորեն էին տալի՞ս,— զարմացա ես: Այն ժամանակ, ախր Դիլիջանի ձորը հացի կարոտ երկիր էր: Ամբողջն անտառ էր, եղած հողի մեծ մասում էլ կարտոֆիլ էին ցանում: Ծնվել եմ, չեմ ծնվել, հիշում եմ, շարունակ հացի պակասություն եմ տեսել մեր գյուղում, դրա համար էր Գրիգորը կռոյի հացի մասին բերնի ջուրը գնալով պատմում:

— Տալիս էին... էն, որ մեզ մոտ խոզերն էլ չեն ուտում, նրանք վերցնում էին գարուն բարեբար: Ցամաքաբերդից դենը մի գյուղ կա՝ Գոմաձոր են ասում, էնտեղ...

— Վա՞յ, դու Գոմաձորը տեսել ե՞ս,— սրտի թըպըրտոցով կտրեցի ես:— Ախր իմ քրոջը Գոմաձոր են տարել:

— Տեսել եմ, բա՜... էդ Գոմաձորում...

— Գրիգո՛ր ջան, էդ Գոմաձորը որտե՞ղ է,— ընկերոջս խոսքը դարձյալ ընդհատեցի ես:— Կարող ե՞ս էնպես նկարագրել, որ առանց հարցնելու ուղիղ գնամ հասնեմ Գոմաձոր:

— Իսկապես, հո փախչելու միտք չունե՞ս,— նորից սկսեց իր հարցաքննությունն իմ ընկեր Գրիգորը:

— Չէ՜, ի՜նչ ես ասում...

— Այսինքն որ ուզենաս էլ, ուրիշ տեղ չես կարող գնալ: Ուրիշ տեղ գնալու հնար չկա, քանի որ

Մարմարիկի երգն անմար,
Երբ մանուկներն են բաժանվում
Ալիքներից իր մարմար:
Համբույր տալով մերկ ափերին՝
Շշնջում է նա սրտանց.
— Բարի՜ ճամփա մանուկներին,
Բարի՜, բարի՜ վերադարձ:
Գիրկս կգաք նորից, գիտեմ,
Երբ որ ամառ լինի չէկ,
Բայց ուզում եմ, ի՛մ մանուկներ,
Որ ձմռանն էլ ինձ հիշեք:

Նկ. ՆԻԿՈԼԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



առաջդ ծով է: Ծովի ափով թագավորական ճամփեն* ուղիղ տանում է Գոմաձոր: Առաջ հասնում ես Ցամաքաբերդ: Ցամաքաբերդն անց կացար, մի քիչ գնացիր՝ կտեսնես մեր Դիլիջանի գետից մի վարար գետ հրես ծովիցը դուրս է գալիս ու հանգիստ գնում է դեպի Երևան: Վրան էլ մի մեծ կամուրջ կա: Կամուրջը անց չկենաս: Հենց հասար գետին, աջ ափով դրա ջրերի հետ դու էլ գնա: Մի քիչ որ գնացիր, կըտեսնես քեզանից աջ, վերևը, մի ձորի մեջ քոնձոտ-մոնձոտ տներ կան: Գոմաձորը դա է, որ կա:

— Ո՞նց թե քոնձոտ-մոնձոտ,— վիրավորվեցի ես: — Գոմաձորը մեր խնամոնց գյուղն է... Նրանք էլ հարուստ մարդիկ են, ինչի՞ պետք է քոնձոտ տներում ապրեն...

— Կարող է հարուստ են, բայց հո՛ նրանց տները, հո՛ մեր անասունների գոմերը:

Նրա այդ խոսքը սրտիս կպավ, ուրեմն իմ քույրը գոմի նման տա՞ն է ապրում: Գրիգորը, երևի ինձ զայրացնելու համար է վատաբանում մեր խնամոնց գյուղը:

Նեղացած գնացի ցրված անասուններին հավաքելու: Նեղացա, բայց գոհ էի: Այդ անիրավ Գրիգորը այնպես բացատրեց, որ աչքերս կապած կհասնեմ Գոմաձոր:

«Էս ի՞նչ արի... Գրիգորը հո պարզ հասկացավ իմ մտադրությունը»,— անհանգստացա ես: Բայց հետո մտածեցի, որ այդպես ավելի լավ կլինի, որ կորչեմ, կասի՝ քրոջ մոտ գնալու միտք ուներ: Ծեր ապիս ու իր ջահել կինը չեն անհանգստանա...

Հաջորդ օրը մեր անասունները սովորականից շուտ հանդ տարա և մինչև Գրիգորի երևալը Նովավորի մոտ, համբուրեցի մեր Ջեյրան կովի աչքերը, մնաս բարի ասացի իմ չորքոտանի ընկերներին և քարից-քար, թփից-թուփ թռչկոտելով՝ իջա Դիլիջանի ձորը...

---

* Թագավորական ճամփա այն ժամանակ մենք Դիլիջան-Երևան պետական խճուղուն էինք ասում։

# ԱՆՏԱՌԻ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

## («Ծաղկաձորյան մանրանկարներ» շարքից)

Մեքենան կանգնել էր առվակի մոտ, ծառերի արանքում: Այս ու այն կողմ թափված էին պայուսակներ, կապոցներ, շշեր, կճեպներ ու թղթի կտորտանքներ: Կրակի մոտ թևերը քշտած մի մարդ մըսերը շարում էր շամփուրներին ու շուտ-շուտ բացականչում.

— Պա՜հ-պահ, ի՜նչ խորոված է լինելու: Մատներդ հետը կուտեք:

Կինը խոտերին փռված ծածկոցի վրա ափսեներ էր շարում: Փոքրիկ աղջիկը օգնում էր նըրան: Ծառի ստվերում պառկած ակնոցավոր տղան ամսագիր էր կարդում:



— Ո՜նց լավ տեղ է, ափսո՜ս, շուտ չենք իմացել,— ասաց մարդը:— Ամեն կիրակի կարելի է այստեղ գալ:

Նա էլի ուզում էր ինչ-որ բան ասել, բայց նկատելով կրակին մոտեցող երկու պիոներներին, լըռեց:

— «Փարվանա» ճամբարի «Անտառի բարեկամներ» խմբակի պարեկներ Հրանտ և Լևոն,— ասաց նրանցից բարձրահասակը:— Խնդրում ենք հանգցնել կրակը, մաքրել շրջակայքը և կանաչ ճյուղերը չկտրտել:

— Ես էլ այսօր ուրախ եմ, կատակելու տրամադրություն ունեմ,— ծիծաղեց մարդը:



— Մենք չենք կատակում,— ասացին տղաները:

— Իզո՜ւր, կատակը ախորժակ է բացում,— ասաց մարդը:— Մի քիչ սպասեք՝ խորոված կհյուրասիրեմ:

— Շնորհակալություն,— ասաց Լևոնը:— Խնդրում ենք՝ ասվածը անել: Մենք սպասում ենք:

— Դե՜հ, ինձ մի՛ բարկացրեք,— ասաց մարդը լրջանալով:— Այդ ինչպե՞ս եք խոսում

# ՀՐԱԺԵՇՏԻ ԽԱՐՈՒՅԿ

ԳՐԻԳՈՐ ՄԱՀՄԱՆՅԱՆ

Ճամբարում իջավ երեկոն թովիչ,
Շնկշնկում է մեղմ անտառը հովից...
Մի լայն բացատում վառել ենք խարույկ,
Թնդում է չորս կողմ մեր երգը առույգ:

Ձայնակցում է մեզ գետը կարկաչուն,
Աստղերը վերից ժպտո՜ւմ են, կանչո՜ւմ,
Խարույկի բոցը օրորվում թեթև,
Պարող աղջիկ է, ասես, քնքշաթև:

Խարույկը կայծեր ու խինդ է փռում,
Ու երկինքն ի վեր բոցն է թռթռում,
Դրոշի նման ծածանվում հովից,
Բացատն է դարձել լույսերի հովիտ:

Գետը անտառին օրոր է ասում
Արդեն մի ուրիշ ձայնով զովասուն:
Մնացեք բարո՜վ, անտա՛ռ ու ճամբա՛ր,
Կանչում է նորից դպրոցի ճամփան:



ձեզնից մեծի հետ: Հապա մի՛ քայլով մա՛րշ դեպի ճամբար:

— Դուք իրավունք չունեք այդպես վարվել անտառի հետ,— ասաց Հրանտը:

Կինը թողեց աշխատանքը և մոտեցավ նրանց:

— Մի՞թե մենք իրավունք չունենք հանգստանալ բնության մեջ,— ասաց նա:

— Դուք կարող եք իջնել անտառից ներքև, այնտեղ կրակ վառել,— ասաց Լևոնը:— Անտառում չի թույլատրվում:

— Ուրեմն՝ անտառ մտնելն արգելվա՞ծ է,— ասաց կինը:

— Ո՛չ, ինչո՞ւ,— ասաց Հրանտը:— Բայց չպետք է անտառը կեղտոտել ու վնասել:

— Ի՞նչ խելոքն ես,— ծիծաղեց մարդը:— Այդ խելքը պետք է դպրոցում ցույց տալ:

— Հրանտը գերազանցիկ է: Խնդրում եմ չվիրավորել,— ասաց Լևոնը:— Եթե մեր պահանջը չըկատարեք, կհայտնենք ճամբար և անտառատնտեսություն:

— Լավ, եկեք խոսենք ինչպես մեծը մեծի հետ,— մեղմացավ մարդը:— Դուք բարեկիրթ տղաներ եք, բայց արդյո՞ք այս փոքրիկ կրակով կամ մի երկու թղթի կտորով կարելի է վնաս տալ անտառին: Ինչո՞ւ եք մեր հանգիստը խանգարում:

— Մենք բոլորովին էլ նպատակ չունենք խանգարել,— ասաց Հրանտը:— Մի՞թե անտառը կեղտոտելով կարելի է հանգստանալ: Եթե ամեն մեկը ձեզ պես վարվի, անհնար կլինի անտառը մաքուր և անվնաս պահել:

— Այնպես ես խոսում, կարծես շարադրություն գրելիս լինես,— հեգնեց մարդը:— Գիտե՞ք, թե ես ով եմ:

— Այո՛: Անտառի թշնամին:

Այդ պատասխանից հանկարծակիի եկած մարդը մինչև մտածում էր ինչ ասել, նրան մոտեցավ ակնոցավոր տղան:

— Գնանք այստեղից, հայրի՛կ,— ասաց նա:— Տղաները ճիշտ են:

Լևոնը և Հրանտը սպասեցին, մինչև մեքենան հեռացավ: Հետո շարունակեցին ճանապարհը: Առջևից քայլող Հրանտը հանկարծ կանգ առավ և ուրախացած կանչեց.

— Լևո՛ն, նայի՛ր, նոր ծաղիկ: Եղավ արդեն քառասունհինգ տեսակ: Հաջորդ «Ծաղկի տոն»-ին կհաղթենք լոթերորդ ջոկատին: Մեր ջոկատի ծաղկեփունջը երկու տեսակով ավելի կլինի:

ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑ






Դուք կարծում եք ծխնելույզ մաքրողը միայն մրոտ երես ունի և ատամնե՞ր է քարշ տալիս: Ո՛չ, նա իր հետ նաև երջանկություն է բերում: Դա բոլորը գիտեն, մանավանդ նրանք, որոնց հագուստի վրա կոճակներ կան: Երբ նրանց կողքով ծխնելույզ մաքրող է անցնում, նրանք անմիջապես բռնում են իրենց կոճակները և մտքում մի ցանկություն հայտնում: Եվ այդ ցանկությունը իսկապես կատարվում է, որովհետև մարդիկ այդպես են վարվում շատ հին ժամանակներից և կշարունակեն այնքան, քանի դեռ այս աշխարհում ծխնելույզ մաքրողներ կանգնեն փողոցներով: Եթե դա ճիշտ չլիներ, մարդիկ հավանաբար այդպես չէին վարվի:

Հիմա դուք տեսնում եք, որ բոլոր մարդիկ կարող են իրենց ուզածի պես երջանիկ լինել: Դրա համար նրանց միայն կոճակներ և ծխնելույզ մաքրողներ են պետք:

Այս ամենը շատ լավ գիտեր փոքրիկ Ենիկը: Արվարձանի փողոցներում ապրող մի որբ տղա էր նա, դրա համար էլ շատ գեղեցիկ ցանկություններ ուներ: Նա մեկ երազում էր կարկանդակ ուտել, մեկ՝ կարուսելի տոմս ունենալ, մեկ մահացած մորն էր հիշում, կամ էլ խնձորի մասին էր մտածում, որ գեր կանայք կողովներով վաճառում էին սուրբ Հակոբի հրապարակում: Նա ոչինչ չուներ, դրա համար էլ նրա երջանիկ լինելու չափը շատ մեծ էր:

Բայց նա մի մեծ թերություն ուներ. փոքրիկ Ենիկի պատռված պիջակի և գզգզված շալվարի վրա մի կոճակն ինչ է՝ չկար: Պիջակը և վարտիքը բարի մարդիկ էին նրան նվիրել, բայց դուք գիտեք, որ նույնիսկ ամենաբարի մարդիկ իրենց ամենալավ իրը ուրիշին չեն նվիրում: Դրա համար էլ, երբ Ենիկը հագուստը նվեր ստացավ, այն արդեն բավականին մաշված էր և նրա վրա կոճակ չէր մնացել: Երբ Ենիկը իմացավ ծխնելույզ մաքրողի, կոճակների և երջանկության գաղտնիքը, տխուր մտքերը պաշարեցին նրան. «Ես չեմ կարող երջանիկ լինել, քանի որ ոչ մի կոճակ չունեմ»:

Այդ օրվանից սկսած՝ տղան միայն մի բանի մասին էր մտածում, թե որտեղի՞ց մի որևէ կոճակ ձեռք գցի: Բոլոր երեխաների համար կոճակ ունենալը դատարկ բան էր, բայց, ա՜յ, Ենիկի համար դա դժվար խնդիր էր: Չէ՞ որ կոճակ ունենալու համար պետք էր հայր ունենալ, որ խանութից գներ այն, և մայր պետք էր ունենալ, որ կոճակը հագուստին կարեր: Իսկ այդ երկուսից էլ Ենիկը զուրկ էր:

Ենիկը որոշեց կոճակի համար փող աշխատել: Մեկի համար նա վեցերորդ հարկ ջուր էր կրում, մի ուրիշի համար փոքրիկ սայլակով, որին շուն էր լծված, ածուխ էր տեղափոխում, գյուղ էր գնում կաթ բերելու և ընդհանրապես ամեն ինչ անում էր, ինչ որ կարող էր անել նրա տարիքի տղան:

Բայց կոճակի փող նա այդպես էլ չաշխատեց: Ի՞նչ կարիք կա այդքան փոքրիկ տղային փող տալ,— մտածում էին մարդիկ,— միևնույն է, նա դրանով քաղցրավենիք կգնի: Ավելի լավ է նրան ուտելու բան տալ, դա նրան օգտակար կլինի:

Եվ տալիս էին: Երբեմն հաց, երբեմն պանիր, մի պնակ ապուր կամ էլ որևէ ճաշի մնացորդ: Ենիկն էլ, ուտելուց հետո այնպիսի երանելի վիճակի մեջ էր ընկնում, որ կոճակի մասին մոռանում էր և հավատում էր, թե երջանկությունը առանց կոճակի էլ կարող է գտնել:

Բայց երբ վրա էր հասնում երեկոն և ուտելիքից միայն հիշողություններ էին մնում, տղայի ամբողջ ուժն ու ինքնավստահությունը չքանում էր, ցանկալի կոճակը կախարդական իր բոլոր հատկություններով սկսում էր պարել նրա աչքերի առաջ: Այդ բանը տեղի էր ունենում հատկապես այն ժամանակ, երբ նա անցնում էր կոճակների խանութի առջևից, որտեղ ցուցափեղկի ետևում ամենատարբեր կույտեր էին շարված:

Նա կոճակներին նայում էր ավելի ու ավելի ագահաբար, և խանութի տիրուհին, նկատելով այդ, և չհասկանալով նրա այրվող հայացքի նշանակությունը, վռնդում էր նրան.

— Կորի՛ր, կեղտո՛տ տղա: Քո աչքերում ես ոչ մի լավ բան չեմ տեսնում:

Նա մտածում էր, թե տղան բան է ուզում գողանալ: Ենիկը ամոթահար հեռանում էր:

Ավելի ուշ, գիշերը, երբ նա քուրձերի կույտի վրա քնում էր կիսանկուղային խցիկում, իրենից ավելի դժբախտ տասը մարդկանց հետ, սաղափե կոճակը և

վաճառողուհու անբարեհամբույր դեմքը երազում նրան հանգիստ չէին տալիս:

Այդպես նա երկա՜ր, շա՜տ երկար և ապարդյուն երազում էր կոճակի մասին: Երբ մի օր փողոցում պատահաբար հանդիպեց մի աղջկա, որի բաճկոնակի վրա ճիշտ այնպիսի մի չքնաղ սադափե կոճակ կար, որպիսին նա տեսել էր խանութում: Բայց միայն այդ չէր, որ նկատեց Ենիկը. նաև տեսավ, որ գեղեցիկ կոճակը միայն մի թելից է կախված և շուտով կպոկվեր: Նրա սիրտը թպրտաց այն մտքից, որ, ա՛յ, այս աղջնակը կարող է կորցնել կոճակը, իսկ ինքը կգտնի այն: Դա վերջ կտար նրա տառապանքներին: Արդեն նա կունենար այն ամենը, ինչ երազում էր:

Դրա համար էլ Ենիկը ետ դարձավ և բոլորից աննկատ գնաց աղջնակի ետևից: Եվ ինչի մասին որ այնքան երազում էր՝ կատարվեց: Երբ աղջիկը մի ցածրիկ տան դռնակից ներս էր մտնում, կոճակը պոկվեց և ընկավ մայթի վրա: Աղջիկը այդ չնկատեց: Դա մի շատ ցրված փոքրիկ աղջիկ էր, եթե նկատի ունենանք, որ պոկվել էր նրա միակ կոճակը և նա երջանկությունից զրկվելու վտանգի տակ էր:

Ենիկը ցնծում էր: Նա զգույշ գետնից վերցրեց կոճակը և պահեց ձեռքում: Կոճակը թանկագին քարի պես փայլում էր արևի տակ: Ենիկն արագ թաքցրեց այն գրպանում և ետ նայեց. աղջիկը ոչինչ չնկատելով՝ տուն մտավ: Ենիկն անհայտացավ փողոցի անկյունում:

Նա կոճակը զգույշ տուն հասցրեց: Պիջակը հանեց և գնաց ասեղ ճարելու: Թելը նա քուրձերի կույտից հանեց, որի վրա քնում էր, և անմիջապես սկսեց կոճակը կարել, որպեսզի քանի դեռ լույս է, ամեն ինչ վերջացներ:

Բայց այստեղ հանկարծ նա մի բան հիշեց: Հիշեց փոքրիկ աղջկան, որն հիմա երևի լաց էր լինում, որովհետև կորցրել էր գեղեցիկ կոճակը: Գուցե նա իսկի չգիտեր էլ, թե որքան ուրախություն կարող էր բերել այդ կոճակը: Եթե աղջիկն իմանար, թե ինչ կարող էին անել կոճակն ու ծխնելույզ մաքրողը, նա, իհարկե, զգույշ կլիներ: Բայց երբևէ նա այդ մասին անպայման կիմանա: Իսկ կոճակն այլևս չի լինի: Կարող է պատահել, որ աղջիկն էլ երբեք ուրիշ կոճակ չունենա, չէ՞ որ կոճակ ճարելը շատ դժվար է: Աղջնակը կորցրեց այն, իսկ ինքը վերցրեց: Վերցրե՞ց: Ո՛չ, գտա՛վ: Գուցե և պետք է վերադարձնե՞լ այն:

Չէ, նա այդ անելու ուժ չուներ, որովհետև կոճակի մասին երազել էր երկար և ծանր օրերի ընթացքում:

«Երբ կոճակն ինձ երջանկություն բերի, հետո ես այն կվերադարձնեմ աղջկան, հնարավոր է, որ ուրիշ բան էլ հետը տամ,— մտածեց նա,— բայց կգտնե՞մ ես այդ աղջկան»:

Նրա ձեռքերը թեև դողում էին, բայց նա կարում էր, հա կարում:

Մյուս օրը նա փողոց ելավ, և կոճակը նրա կրծքի վրա աստղի պես փայլում էր: Տղային թվաց, թե այն անմիջապես աչքի կընկնի: Դրա համար էլ նա ձեռքով մի փոքր այն ծածկեց: Բացի այդ նա վախենում էր, որ երեկվա աղջկան կհանդիպի:

Քայլում էր փողոցներով և ծխնելույզ մաքրողին էր փնտրում, միաժամանակ մտածելով, թե հանդիպելիս ինչ ցանկություն հայտնի: Վերջապես որոշեց. բյուրեղյա սարի վրա ոսկե դղյակ և նարինջ խնդրել:

Կեսօրին մոտ նա հանդիպեց ծխնելույզ մաքրողին: Նա նեգրի պես սև էր, միայն աչքերն էին մանուշակի պես կապույտ: Տղան արագ անցավ այն մայթը, որով գնում էր ծխնելույզ մաքրողը և պինդ սեղմեց կոճակը:

Նրա սիրտը կրծքում պանգի պես կնգում էր:

Ծխնելույզ մաքրողը մոտենում էր: Նա հանգիստ գնում էր և ժպտում:

Ենիկը գունատվեց: Սառած ձեռքերով նա ավելի ու ավելի պինդ էր սեղմում կոճակը:

«Թող մոտենա մինչև հինգ քայլ, այն ժամանակ ես կշշնջամ իմ խնդրանքը»,— մտածեց նա:

Ծխնելույզ մաքրողը արդեն նրա կողքին էր: Սև բեղերի տակ մեղմ ժպիտ կար թաքնված:

«Դղյակ և նարի...»

Փըրթ...

Կոճակը, որը կարված էր փտած թելով և այնքան պինդ էր սեղմել Ենիկը, պոկվեց և թառամած ծաղկի պես, թելի կտորտանքների հետ մնաց տղայի ձեռքում:

Ենիկի բոլոր հույսերը միանգամից խորտակվեցին: Արցունքներ երևացին աչքերում, հեկեկանքը բռնեց կոկորդը: Նա անսահման դժբախտ էր, քանի որ այդ բոլորը պատիժ էր համարում ուրիշի երջանկության կոճակը վերցնելու համար:



Նա այնպես դառնորեն լաց եղավ, որ ծխնելույզ մաքրողը շուռ եկավ և մոտեցավ նրան:

— Քեզ ի՞նչ պատահեց, տղա՛,— հարցրեց նա: Նրա ձայնն այնքան մաքուր էր, որքան ինքը՝ ծխնելույզ մաքրողը մրոտ էր:

Բայց Ենիկը, կոճակը պահած փոքրիկ կեղտոտ ձեռքում, անմխիթար լալիս էր:

— Քեզ որևէ մեկը վիրավորե՞լ է, թե՞ բան ես կորցրել:

Ծխնելույզ մաքրողի ձեռքը, ինչպես մի տաք աղիք, շոյում էր Ենիկի գլուխը:

— Ես կոճակ եմ գողացել,— մի կերպ ասաց Ենիկը:— Ես դդյակ և նարինջ էի ուզում, դրա համար էլ երեկ կոճակ գողացա:

Եվ նա նորից լաց եղավ:

— Իսկ դու ո՞ւմ տղան ես:

Ենիկը չգիտեր, թե ում տղան էր: Նա ոչ մեկինը չէր, չնայած շատ լավ է, երբ մարդ ինչ-որ մեկին պատկանում է:

Ծխնելույզ մաքրողը վերցրեց Ենիկի ձեռքը և



տարավ իր հետ այն փոքրիկ տունը, ուր մտել էր երեկվա աղջիկը:

— Մայրի՛կ և Լիզա՛, ես ձեզ մի փոքրիկ տղա եմ բերել, որը լաց է լինում նրա համար, որ դդյակ ու նարինջ է ուզում:

— Ես դրա համար չեմ լալիս,— ասաց Ենիկը,— այլ նրա համար, որ կոճակ եմ գողացել:

— Ո՛չ դդյակ, ո՛չ էլ նարինջ մենք քեզ չենք կարող տալ,— ասաց ծխնելույզ մաքրողի կինը,— իսկ, ա՛յ, ճաշ կտանք:

Եվ նրան ճաշ տվին: Նստեցրին սեղանի մոտ, լիքը ափսեով ապուր դրին առջևը: Ենիկի մի կողքին նստել էր արդեն լվացված և մաքրված ծխնելույզ մաքրողը, մյուս կողքին՝ տանտիրուհին, իսկ դիմացը՝ Լիզան, որը երեկ կորցրել էր կոճակը:

Նրան բարի ու սիրալիր հարցեր էին տալիս, իսկ նա պատասխանում էր: Կյանքում այդքան չէր խոսել, ինչքան այդ օրը: Պատմեց, թե ինքը ինչքան միայնակ է, ինչպես է երջանկություն ուզում, ինչպես էր կոճակ փնտրում և թե հետո ինչ տեղի ունեցավ:

Ծխնելույզ մաքրողն ու իր կինը ժպտում էին: Լիզան նայում էր նրան լուրջ, կարմացած աչքերով, իսկ ապուրը գոլորշի էր արձակում և այնպես էր բուրում, ինչպես բուրվառը՝ եկեղեցում:

— Դու ինձ դուր ես գալիս, տղա՛ս,— այնուհետև ասաց ծխնելույզ մաքրողը,— և, եթե ուզում ես, կարող ես մնալ մեզ մոտ և ես քեզ ծխնելույզներ մաքրել կսովորեցնեմ: Թե չէ Լիզան մենակ տխրում է:

Տանտիկինը գլխով արեց, իսկ Լիզայի աչքերում ինչ-որ բան փայլեց: Ենիկը սիրով համաձայնեց:

Նա սկսեց ծխնելույզ մաքրել սովորել:

Ծխնելույզ մաքրող լինել, նշանակում է երջանկություն բերել մարդկանց: Բայց ինքը՝ ծխնելույզ մաքրողը չի կարող երջանկության հասնել կոճակի օգնությամբ: Որովհետև նա, ով երջանկություն է տալիս, չի կարող ինքն էլ վերցնել: Այնուամենայնիվ Ենիկը չէր նկատում, որ ինքը զրկված է այդ արտոնությունից, և երջանիկ էր, չնայած հիանալի գիտեր, որ ինքը որպես ծխնելույզ մաքրող, չի կարող ուրիշ ծխնելույզ մաքրողի հանդիպելիս կոճակ բռնել և իր երազանքներն հայտնել:

Ենիկը ելնում էր ամենաբարձր՝ գրեթե երկնքին հասնող կտուրները և խողովակներով իջնում էր մինչև մրոտված օջախները: Մարդիկ նրան սիրում էին, որովհետև նա այնպես էր մաքրում ծխնելույզները, որ նրանք ուղղակի փայլում էին, և այդ մաքրված օջախներում եփված կերակուրները նախշուն դեղձանիկների էին նմանվում: Ենիկը մարդկանց կրակի համար արևի և օդի առաջ ճամփա էր բացում: Դա լավ աշխատանք էր:

Ժամանակը գետի պես հոսում էր, իսկ Ենիկը աճում էր Դավթի նման: Ծխնելույզ մաքրողը գոհ էր նրանից, տանտիրուհին նրան սիրում էր, իսկ Լիզան... Ա՜խ, Լիզան նրան վաղուց ներել էր ոչ միայն այն, որ նա իր կոճակը «գողացել էր», այլև իրեն կին վերցնելն էր ներել:

Հիմա Լիզան երիտասարդ, քնքուշ ցարասու էր նման, իսկ Ենիկը՝ կարծես հաճարենի լիներ:

Եթե դուք երբևէ հանդիպեք նրան, անմիջապես կճանաչեք: Նա նման է բոլոր ծխնելույզ մաքրողներին, բայց նրա գրպանները լիքն են կոճակներով, և նա դրանք բաժանում է նրան, ում հագուստի վրա կոճակ չի լինում, որովհետև նա չի ուզում մեկին երջանկություն բերել, մյուսին՝ ոչ:

Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ

# ՃԱԿԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՀԻՆ

ԴԱՎԻԹ ՈՍԿԵՐՉՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ալփասլանը նայեց թանձր մառախուղով ծածկված քաղաքին, չտեսավ քաղաքը ու ինքն իր մեջ ափսոսաց դրա համար: Նա կրկին ետ դարձավ իր վրանը, որտեղ իրեն էին սպասում զորահրամանատարները: Նրանցից և ոչ մեկը չհամարձակվեց խոսել, քանի որ չափազանց թանկ կարող էր նստել ամեն մի ավելորդ բառը:

Այո՛, հզոր էր Ալփասլանը: Մի քանի ամսում նրա բանակը կտրել-անցել էր տասնյակ երկրներ՝ իր ճանապարհին տրորելով ու հրկիզելով ամեն ինչ: Բայց դա քիչ էր թվում գոռոզ ու մեծամիտ զորավարին: «Աշխարհը մի արքա պիտի ունենա, և դա կլինեմ ես: Ի՞նչ Իսքանդեր, ի՞նչ Կյուրոս, ես ջնջել կտամ նրանց անունը պատմության միջից, որպեսզի մնա մի Ալփասլան»:

Իսկ փոքրիկ հայկական քաղաքը, որն ուներ ընդամենը մի քանի հազար բնակիչ և երեք եկեղեցի, պատրաստվում էր ընդդիմանալու աշխարհի ամենահզոր զորաբանակներից մեկին: Թշնամու դեմ բոլոր պատրաստությունները կատարվում էին Հակոբ վանահոր գլխավորությամբ: Հենց Հակոբ վանահայրն էլ երկու ճարպիկ պատանիների՝ Սիսակին ու Վահրամին պատվիրել էր բարձրանալ եկեղեցիներից մեկի գմբեթը և այնտեղից հետևել թշնամու տեղաշարժերին: Սիսակն ու Վահրամը ամբողջ գիշեր եկեղեցու գմբեթի վրայից հսկում էին թշնամուն: Նրանք արևածագին միայն հեռվում նշմարեցին դեպի քաղաք շարժվող ձիավորների հոծ խմբերի: Թշնամին սկսեց իր հարձակումը... Սիսակը շտապեցրեց Վահրամին և շտապով իջավ ու վազեց այդ մասին տեղեկացնելու ում հարկն է: Իսկ Վահրամի ոտ ու ձեռը վախից թուլացան: Նա հիշում էր, որ սելջուկների դեսպանին ետ ուղարկելուց հետո, Հակոբ վանահայրն ասաց. «Կմեռնենք, բայց չենք հանձնվի, մեր գործը օրհնըված է»: Վահրամը չէր ուզում մեռնել, նա դեռ տասնըչորս տարեկան չկար: Եվ նա որոշեց թաքնվել եկեղեցու զանգակատանը, որտեղ համեմատաբար ավելի ապահով էր կարծում: Վահրամին ոչ ոք չհիշեց, քանի որ Սիսակն արդեն բերել էր թշնամու հարձակման չարագույժ լուրը:

Սելջուկներն իրենց հարձակումը սկսեցին քաղաքի դարպասների վրա, և այդ էր պատճառը, որ քաղաքի պաշտպանների վիճակը որոշ չափով թեթևացավ: Նրանք մահացածներին ու վիրավորներին տեղափոխում էին քաղաքի մյուս, խաղաղ մասը, այնտեղ նրանց վրայից հանում էին նետերը, որպեսզի կրկին այն ետ վերադարձնեն թշնամուն: Թշնամու այդ քայլը նպատակ ուներ շեղելու պաշտպանվողների ուշադրությունը քաղաքի ետին պարիսպներից:

Եվ այդ նրանց հաջողվեց:

Շուտով սելջուկները աննկատելի հայտնվեցին քաղաքի ետին կողմը: Այստեղ նրանք չհանդիպեցին համառ դիմադրության և արյունոտ կռվի: Այստեղ լիակատար լռություն էր տիրում:

Վահրամը, որ ուշի-ուշով հետևում էր մարտին, տեսնելով անպաշտպան պարիսպներն ի վեր մագլցող սելջուկ զինվորներին, սարսափից կարկամեց: Ուզնել



ցած և զգուշացնել համաքաղաքացիներին, ուշ կլիներ... ճակատագրական էր պահը. Նա երկար չմտածեց, եկեղեցու զանգերի պարանները փաթաթեց ձեռքերին և սկսեց հնչեցնել զանգերը... Պաշարվածները սթափվեցին, շտապեցին վերադասավորել ուժերը: Այդ իրարանցման մեջ մարդիկ Վահրամի աչքում նըման էին բնավեր մրջյունների, որոնք այս ու այն կողմ էին նետվում: Պետք էր նրանց հասկացնել, որ հուսալքությունը կործանում է, պետք է կռվել, բաց աչքերով ու համարձակ նայել թշնամուն: Բառերի փոխարեն ավելի ու ավելի ուժգին հնչեցնում էր զանգերը: Այդ պահին նետը խոցեց նրա կուրծքը... Նա մնաց կախված երկնի ու երկրի միջև... Իսկ մարտը շարունակվեց: Թշնամին քաղաքը ողողեց արյամբ, բայց ի վերջո, ստիպված եղավ նահանջել...







## ՊՂՏՈՐ ՋՐՈՒՄ ՁՈՒԿ ԲՌՆԵԼ

Հնէաբանները ասում են, թե շատ ժողովուրդների նախահայրերն ապրել են մեծ մասամբ ձկնորսությամբ:

Անկասկած, բոլոր ձկնորսները, այլևայլ միջոցների հետ միասին, պղտորում են ջուրը՝ որսը դյուրացնելու համար: Միանգամայն հասկանալի է, որ ոչ թե մի վայրում, այլ՝ շատ վայրերում և տարբեր ժամանակներում կարող էր ծագել այս բառերի այլաբանական իմաստը: Իր նպատակին հասնելու համար «աչքերին թոզ փչող», անազնիվ ճանապարհով անձնական բարեկեցության ձգտող մարդը վարվում է նույն ձևով, ինչպես ձուկ բռնելու համար ջուրը պղտորողը:

Դժվար թե այս արտահայտությունը մի մարդու հորինածը լինի, բայց հնագույն գրականության մեջ դրան հանդիպում ենք հույն առակագիր Եզոպոսի մոտ: Նրա առակներից մեկում խորամանկ ձկնորսը դիտմամբ պղտորում է ջուրը, որ և՛ հարևաններին նեղացնի, և՛ շատ ձուկ բռնի:

## ՔԹԻՑ ԲՌՆԱԾ ՄԱՆ ԱԾԵԼ

Գնացեք Միջին Ասիա: Այնտեղ ճանապարհներին տարօրինակ բան կտեսնեք: Քայլում է մի փոքրիկ մանչուկ կամ աղջնակ և իր ետևից քաշում հըսկա ուղտին: Կենդանին հնազանդ քայլում է նրա ետևից, որովհետև երեխան քաշում է պարանը, որը կապված է կենդանու քթանցքերից անցկացված օղակին: Փորձիր չհնազանդվել: Ուզես-չուզես կգնաս նրա ետևից, եթե քթից բռնած ման են ածում քեզ: Նման օղակներ անց էին կացնում նաև կատաղի ցուլերի քթանցքը՝ նրանց սանձելու համար:

«Քթից բռնած ման ածել» արտահայտությունը նշանակում է. խաբելով, խոստանալով շարունակ ու խոստումը չկատարելով, տանել իր ետևից:



ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ԹԱՅԹԱՆԻ ԴՊՐՈՑԱՄԵՐՁ ԱՅԳԻՆ

Բերքահավաքի եռուն օրեր էին Արարատի շրջանի Թայթան գյուղում: Գնում էի գյուղի դատարկ փողոցներով, դպրոցն էի փնտրում: Շուտով գյուղը ետևում մնաց, իսկ ճանապարհը դեմ առավ կիսաբաց երկաթե դարպասներով շրջափակված այգիների: Փոքրիկ գետակի ափերին լացող ուռենիներ էին շարված, ու դպրոցը սաղարթների մեջ չէր երևում:

Դպրոցի շուրջն ու այգու եզրերը պատած էին վարդի թփերով և աշնանային հազարերանգ ծաղիկներով: Թփերի վրա խոշոր վարդեր կային, որոնք դպրոցի դիրեկտոր ընկեր Վահրամ Մինասյանի վկայությամբ, ծաղկում են մինչև խոր աշուն՝ մինչև դեկտեմբեր: Վարդենիները իրարից բաժանված էին փոքրիկ եղևնիներով:

Ութերորդ դասարանցի պատանի բնասեր Նվարդ Մնացականյանը պատմեց, թե ինչպես է դեկորատիվ վարդերը բազմացրել անդալիսի եղանակով:

— Այդ նույն եղանակը մենք կիրառել ենք նաև խաղողի վազերի վրա,— ընկերուհուս լրացրեց խմբակի կրտսեր անդամ, վեցերորդ դասարանցի Նարինե Հարությունյանը,— եթե այդ եղանակը չկիրառեինք, այսքան շուտ բերք չէինք ստանա: Խաղողի այգին տնկելուց յոթ տարի հետո է բերք տալիս: Մենք չորրորդ տարում արդեն 3 տոննա բերք հավաքեցինք, իսկ այս տարի՝ կրկնակի:

Հաջորդ քայլափոխին անսովոր մեծության լոլիկները գրավեցին ուշադրությունս: Անտեղյակ չերևալու համար ասացի, որ պարարտանյութ շատ են տվել, դրա համար էլ այդպես մեծ են լոլիկները:

— Փորձնական հողամասի պտուղներն ու բանջարեղենները միայն խիստ անհրաժեշտության դեպքում են պարարտացվում: Մենք անահիտ տեսակի լոլիկը փոշոտել ենք մեր տեղականի հետ,— բացատրեց Թամարան,— և ստացել ենք այսպիսի խոշոր լոլիկներ:

Թայթանի դպրոցականները հետաքրքիր փորձեր են կատարել նաև ծաղիկների վրա, իսկ տանձի, սալորի, նռան, հաղարջի վրա կատարած պատվաստումների արդյունքներին սպասում են եկող տարի, երբ դրանք կտան իրենց առաջին բերքը:

Բայց միշտ չէ, որ ամեն ինչ բարեհաջող է ավարտվում: Երկու ծիրանի չորացել էին: Սնահողի տակ շինարարական աղբ էր մնացել, և արմատներին խանգարել սնվելու: Դպրոցականները չորացած ծառերի շրջապատից հետ էին տվել սնահողը և շինարարական աղբի մնացորդներից վերստին մի լավ մաքրել, ապա նոր տնկիներ դրել: Բայց այս տարի էլ ուրիշ թշնամիներ հայտնվեցին՝ արմատակեր որդերը: Վնասատուներին հայտնաբերելուց անմիջապես հետո, թունավոր լուծույթներով ոչնչացրին դրանց, և վտանգը հեռացավ այգուց:

Միայն փորձնական աշխատանքներ չէ, որ կատարում են Թայթանի աշակերտները: Կես հեկտարից ավելի հողամասը ամենօրյա խնամքի կարիք ունի:

Խմբակի անդամները նաև պատմեցին, որ պարապմունքները օգնում են նրանց բուսաբանության, կենդանաբանության ու ինչ-որ չափով նաև քիմիայի դասերը լավ յուրացնելուն: Իսկ դպրոցամերձ այգուց ստացած եկամուտը աշակերտները կօգտագործեն էքսկուրսիաների և այլ միջոցառումների համար:



## ԴԵՂՆԱՓՈՐԻԿ ՃՆՃՂՈՒԿ



*ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ*

Գարնան երկինք կապուտակ,
Զմրուխտ արտեր անաղմուկ,
Թաքնվում է թփի տակ
Դեղնափորիկ մի ճնճղուկ:

Որքան մոտ է... երկու քայլ,
Եվս մի քայլ, բայց, ավա՜ղ,
Նորից կորչում է հանկարծ
Արտերի մեջ ոսկեշաղ...

Ես դեռ անփորձ, աշխարհում,
Շուրջս արտեր անաղմուկ,
Խաբում, տանում է ինձ
Դեղնափորիկ մի ճնճղուկ:



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

# „ԵՐԿՆՔԻՑ ԽԼԵՑ ԿԱՅԾԱԿԸ, ԻՍԿ ԲՌՆԱԿԱԼՆԵՐԻՑ՝ ՏԻՐԱԿԱԼՈՒԹՅՈՒՆԸ"

*ԱՐՏԱԿ ՌՈՍԿԱՆՅԱՆ*

Գործարար Ամերիկայում լեյդենյան շշով կատարվող փորձերը անմիջապես դարձան փողի աղբյուր: Եվ ահա ոմն դոկտոր Սպենսեր, փող վաստակելու նպատակով, 1747-ին լեյդենյան շշի հետ Գլազգոյից հասավ Բոստոն: Էլեկտրականության մասին նրա կարդացած դասախոսությունները լսվում էին մեծ ուշադրությամբ: Դասախոսություններն ուղեկցվում էին փորձերով. հանդիսատես-լսողների թիվը մեծ էր:

Ապրիլյան մի օր Սպենսերի դասախոսությանը ներկայացավ բարձրահասակ, գեղեցիկ արտաքինով մի ջենտլմեն: Նա ակնապիշ նայում էր կապտավուն էլեկտրական կայծերին և հաճույքով շնչում լեյդենյան շշից բուրող օզոնը: Այդ մարդը Բենջամեն Ֆրանկլինն էր, ամերիկյան մանր արհեստավորներից մեկի տասնհինգերորդ զավակը: Ծնվել էր 1706-ին, Բոստոնում: Ապրեց մոտ ութսունչորս տարի, բայց դրանցից ֆիզիկային հատկացրեց միայն յոթը: Նա պարզեց ոչ միայն լեյդենյան շշի գաղտնիքը, այլև դարձավ ընդհանրապես կուտակիչների վարքն ու բնույթը պարզող առաջին գիտնականը: Նա բացատրեց ֆիզիկայում մինչ այդ հայտնաբերված, բայց առեղծված թվացող գրեթե բոլոր երևույթները: Գերիկի փետուրի ձգելու և վանելու հանելուկը դադարեց հանելուկ լինելուց, երբ Ֆրանկլինը գիտության մեջ մտցրեց դրական և բացասական լիցքի գաղափարը:

Նրա անվան հետ է կապված էլեկտրականության

# ԱՐԱՅԻ ԼԵՌԸ ՀՅՈՒՍԻՍԻՑ

Ովքեր միայն հարավային կողմից են տեսել Արայի լեռը, երևի չեն էլ պատկերացնում, որ նրա հակառակ՝ հյուսիսային կողմը ծածկված է սաղարթախիտ անտառներով, մանր ու մեծ թփուտներով և երփներանգ ծաղիկներով: Հեռվից այդ գեղեցիկ պատկերով բավականին հիանալուց հետո, երբ անտառ մտնեք, բնությունը ձեզ մի նոր անակնկալ կմատուցի: Ամեն քայլափոխի դուք կհանդիպեք տարբեր ամիսների հասունացող մրգատու ծառերի ու թփուտների: Լեռան արևոտ լանջերին վայրի տանձն ու խնձորն է թափված լինում ծառի տակ, սալորն է սևացած, կախված լինում ծառի ճյուղերից, մասուրն է ծիկրակում թփերի միջից, և դրանցից յուրաքանչյուրը իր բույրն է արձակում, իր հմայքն ու գեղեցկությունն ունի:

Ընկերոջս հետ շրջում էինք անտառում և ձորից-ձոր, սարալանջից-սարալանջ, բացատից-բացատ անցնելով՝ հազիվ հասցնում համտես անել անտառի բարիքներից:

Առաջին ճանապարհ կտրելուց հետո, մի արևոտ բացատում, հանդիպեցինք դպրոցականների: Տղաներից երկուսը ծառի վրայի տանձերն էին թափ տալիս, իսկ մյուսները իրար հրմշտելով, վազում էին թեք սարալանջով գլորվող տանձերի ետևից: Ծառը թափ տալուց, տանձերը մի տեղ կուտակելուց հետո, նրանք հավաքվեցին կույտի շուրջը: Մուշեղը կույտը բաժանեց հավասար մասերի և դառնալով մեզ ասաց.

— Թեև դուք չեք աշխատել մեզ հետ, բայց ձեզ էլ ենք բաժին հանում, որովհետև բերքահավաքի ժամանակ եք հանդիպել:

— Բայց չէ՞ որ սրանք դեռ հասունացած չեն, ինչպե՞ս ուտենք,— տարակուսանքով հարցրեց ընկերս:

— Ընդհանրապես մեր անտառում վայրի տանձն ու խնձորը հազվադեպ են հասունանում, ձմեռը շուտ է վրա հասնում,— սկսեց բացատրել Ալբերտը,— այս տանձերը կլցնենք ծղոտի մեջ և կպահենք, մեկ ամիս հետո, երբ մեր գյուղը գաք, կհյուրասիրենք այս նույն, բայց արդեն հասած տանձերով:

— Իսկ ինչո՞ւ անպայման ծղոտի մեջ,— հարցրի ես:

— Որովհետև ծղոտի մեջ տանձը շուտ է հասունանում, թթվությունը անցնում է և դառնում ավելի համեղ,— գրեթե միասին ասացին նրանք և ոգևորված ավելացրին.— Իսկ երկար ժամանակ պահելու համար արդեն ոչ թե ծղոտի, այլ մեծ կճուճի մեջ պետք է լցնել և ամիսը մեկ հասածները ջոկել, որ մնացածը երկար դիմանա:

Այդ տղաները Ապարանի շրջանի Երնջատափ գյուղի միջնակարգ դպրոցի 7-րդ դասարանի աշակերտներ էին: Նրանց հրաժեշտ տալուց հետո հանդիպեցինք դպրոցական աղջիկների մի խմբի: Նրանք մասուր ու սալոր էին հավաքում:

— Սալորը մեզ համար է, մասուրը՝ դպրոցի,— ասացին նրանք և ավելացրին.— Մասուրը դեռ այնքան էլ լավ չի հասունացել, մի երկու շաբաթ հետո նոր կսկսվի մասուրի մասսայական բերքահավաքը: Այն ժամանակ անտառը կլցվի դպրոցականներով: Բերքահավաքին ու դեղաբույսեր հավաքելուն զուգընթաց կմաքրենք անտառը չորուկներից: Եկե՛ք երկու շաբաթ հետո...

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

մեջ հանդիպող տերմինների մեծ մասը, երբ մենք ասում ենք «մարտկոց», «կուտակիչ», «հաղորդալար», «լիցք», «լիցքավորում», հազիվ թե կարծենք, որ դրանք բոլորը ֆիզիկա է ներմուծել նա:

Մարդկության պատմության մեջ դժվար է գտնել մեկ ուրիշ գիտնական, որ իր ժամանակին այնքան հռչակված լիներ, որքան Ֆրանկլինը: Նրան գիտեին բոլորը, անկախ տարիքից, սեռից, զբաղմունքից: Երևի դրան նպաստել էր այն, որ նա գրող էր: Նրա «Խեղճ Ռիչարդը» բազմահատոր գիրքը լույս աշխարհ էր գալիս չխախտվող պարբերականությամբ և հուզում բովանդակ Ամերիկան. «Ես կարող էի փորձել ինձ վրա հրավիրել ընթերցողների բարյացակամությունը, եթե ասեի, որ գրում եմ միայն մարդկության բարօրության համար: Բայց ես ազնվաբար վարված չէի լինի և, բացի դրանից, իմ ժամանակակիցները այնքան էլ հիմար չէին, որ խաբվեին... Ճշմարիտը այն է, որ ես ծայր աստիճան աղքատ եմ, իսկ հրատարակիչն ինձ խոստացել է եկամուտի մեծ մասը...» Այսպես է Ֆրանկլինը գնահատում իր գրական գործունեությունը:

Իրոք, երեսուն տարի շարունակ հրատարակվող այդ ալմանախատիպ գրքի հատորները բովանդակում էին ամեն ինչ, բացի երևի գեղարվեստից: Այն կրում էր օրացույցի բնույթ, հիմնականում լցված առոնին խրատներով, «դատարկ պարկն անհնար է ուղիղ կանգնեցնել», «քոնը կարելի է համարել այն, ինչ կերել ես» և այլն: Գրքի կենտրոնական կերպարը՝ Ռիչարդը կիսաքաղց գիտնական էր, իմաստուն ու բարի, ամեն ինչի ընդունակ: Այն ժամանակվա Ամերիկայի համար խիստ բնութագրական: Թերևս դա էր պատճառը, որ ընթերցողը մեծ հաճույքով էր կարդում այն և սիրով ու երախտագիտությամբ լցվում դեպի նրա հեղինակը: Իհարկե, դեպի քաղաքակրթության բարձունքներն արշավող ամերիկացին շուտ մոռացավ այդ գործի գոյությունը և հիմա այն կարելի է գտնել երևի Ֆրանկլինի արխիվում միայն: Բայց կարևորն այն է, որ Ֆրանկլինը հարստացավ և հիսունին մոտ արդեն նվիրվեց գիտությանը:

Նրա «էլեկտրական» տարիները ցնցեցին ողջ աշխարհը: Առաջին անգամ լսելով Սպենսերի հանրամատչելի դասախոսությունները, Ֆրանկլինը որոշեց համակարգել էլեկտրականության մասին այն բոլորը, ինչ մտածել էր ինքը: Եվ դա նրան հաջողվեց. նա ստեղծեց էլեկտրաստատիկայի բավական պարզ, բայց կուռ և, ինչպես պարզվեց հետագայում, ճիշտ տեսությունը: Ըստ այդ տեսության լիցքերը մի մարմնից կարող են փոխանցվել մեկ այլ մարմին, այսինքն այն, ինչ հաստատում է նաև ժամանակակից ֆիզիկան: Այնուհետև Ֆրանկլինը գտնում էր, որ լիցք կուտակող մարմինը լիցքավորվում է դրականապես, իսկ լիցք կորցնողը՝ բացասականապես: Իսկ մենք գիտենք, որ անկախ լիցքի մի մասը կորցնելուց և ձեռք բերելուց, մարմինը կարող է լիցքավորվել թե՛ դրականապես և թե՛ բացասականապես: Դեռ ավելին. մետաղյա հաղորդալարերում լիցքակիրները էլեկտրոններն են, որոնք լիցքավորված են բացասականապես, ուրեմն էլեկտրական աղբյուրին հաղորդալար միացնելու դեպքում լիցքը պետք է բացասական բևեռից գնա դեպի դրականը: Ինչ խոսք, Ֆրանկլինը չէր հանգի այս եզրակացությանը, քանի որ դեռ չէր ուսումնասիրված հոսանքի բնույթը մետաղներում: Բայց որքան էլ զարմանալի թվա, ժամանակակից ֆիզիկայում հոսանքի ուղղությունը ընդունված է «դրականից»-«բացասական» և այդ պայմանականությունը շարունակում է պահպանվել ի պատիվ Ֆրանկլինի: Իրականում սխալ այդ թեզը որևէ կերպ չի կարող վնասել ժամանակակից պատկերացումներին, ուստի Ֆրանկլինի ընդունած «ուղղությունը» հարկ չկա փոխելու:

Ֆրանկլինը նորանոր տեսություններ էր հղանում, եզրակացությունները բխում էին մեկը մյուսից. ծնվում էին նախ հարց-մեղոդիաները, ապա միահյուսվում և դառնում համահավաք տեսություններ: Էլեկտրաստատիկայի բնագավառին վերաբերող այդ տեսությունները օգնեցին Ֆրանկլինին բացահայտելու մինչ այդ առեղծված թվացող կայծակի էությունը: Նա ցույց տվեց, որ երկինքը թրատող կայծակի շանթը նույն երևույթն է, ինչ լեյդենյան շշով առաջացող պարպումը, բայց, իհարկե, տարբեր չափերով: Ուրեմն, եթե լեյդենյան շիշը սովորական կոնդենսատոր է, ապա կոնդենսատոր են նաև իրար դեմառդեմ տարածված ամպերը կամ ամպերը և հողը:

Երբ հայտնի դարձավ կայծակի էլեկտրական բնույթը, Ֆրանկլինը իրականացրեց իր վաղեմի երազանքը: Իսկ ո՞րն էր այդ երազանքը: Մանկության տարիներին նա շատերին էր անհանգստացնում միևնույն հարցով. ի՞նչ բան է շանթարգելը:

Չէր գոհացել և ոչ մի պատասխանով: Եվ ահա հասել էր ժամանակը, որ գոհացում տար իր պահանջին: Շանթարգելը, Ֆրանկլինի բառերով ասած, «մերթ վնասազերծում է ամպերից եկող կայծակի հարվածը, մերթ էլ հարվածի պահին տանում է նրան դեպի հողը»: Իսկապես, սա չէ՞ արդյոք շանթարգելի էությունը: Մետաղյա ձողիկի ծայրը խրել հողը այնքան, մինչև որ հասնի խոնավ գրունտին, իսկ եթե ձողը ձովի այնպես, որ շրջանցի շենքի ողջ հիմքը, ապա կայծակի հարվածից կվնասազերծվի շենքն ընդհանրապես:

Երբ 1760-ին Ֆրանկլինը Ֆիլադելֆիայում առաջին շանթարգելը դրեց վաճառական Վաստի առանձնատան վրա, Եվրոպան և Ամերիկան բաժանվեցին երկու բանակի. նրանցից մեկը դարձավ շանթարգելի կողմնակից, մյուսը՝ «թշնամի»: Փարիզում նույնիսկ

*սկսեցին արտադրել շանթարգելակիր կանացի գըլխարկներ:*

*Սենթ-Օվերում տան վրա դրած շանթարգելի համար հարևանները դատի տվեցին նշանավոր հաբուստներից մեկին: Դա 1780 թվականն էր: Դատական պրոցեսը տևեց չորս տարի: Դատապաշտպան էր կարգվել դեռ բոլորին անհայտ Մաքսիմիլիան Ռոբեսպիերը: Դա դարձավ նրա հեղինակության բարձրացման սկիզբը: Շանթարգելի հակառակորդների գլուխն էր անցել ժան Պոլ-Մարատը, մի մարդ, որի գրչին էր պատկանում էլեկտրական երևույթների հանրամատչելի շարադրանքին նվիրված երեք գիրք:*

*Վերջապես շանթարգելի կողմնակիցները հաղթեցին. 1782 թվին Ֆիլադելֆիայում տեղադրվեց 400 շանթարգել, գրեթե բոլոր հասարակական շենքերի վրա, բացառությամբ Ֆրանսիայի հյուպատոսարանի հյուրանոցի: 1782-ի մարտի 27-ին կայծակը տակնուվրա արեց հենց այդ շենքը և ի վերջո շանթարգելն ստացավ լիիրավ քաղաքացիություն:*

*Ֆրանկլինին բախտ չէր վիճակված տևականորեն զբաղվելու գիտական աշխատանքով. նա չէր կարող չարձագանքել ժամանակի կանչին: Իսկ ժամանակը Ամերիկայում չէր ընթանում գիտության օգտին:*

*1754-ին Ֆրանկլինն ընտրվեց Անգլիայի ամերիկյան գաղութների համագումարի Պենսիլվանիայի դելեգատ: Բանն այն էր, որ Անգլիայի և Ֆրանսիայի հարաբերությունները սրվել էին. Ֆրանսիան կարող էր հարձակվել Անգլիայի ամերիկյան գաղութների վրա: Հարձակումից պաշտպանվելու համար համագումարում Ֆրանկլինն առաջարկեց Անգլիայի ամերիկյան գաղութների միավորում: Ֆրանկլինի առաջարկությունն ընդունվեց և կազմվեց Ամերիկայի Միացյալ Նահանգները: Ֆրանսիայի և Անգլիայի փոխադարձ դիրքը նըպաստեց ձեռք բերելու նաև անկախություն:*

*Այսպիսով, Ֆրանկլինը դարձավ ժամանակակից հըզոր երկրներից մեկի պետականության և անկախության հիմնադիրը:*

*Բնականաբար, նման խոշոր քաղաքական իրադարձությունները, որոնց կենտրոնում էր հենց ինքը՝ Ֆրանկլինը, նրան հնարավորություն չէին կարող տալ շարունակելու էլեկտրաստատիկայի ասպարեզի իր հետազոտությունները: Բայց կարելի է և չգանգատվել դրա համար, քանի որ դեռ երևի չէին եկել նոր հայտնագործություններ կատարելու ժամանակները. դեռ չէր սկսվել էլեկտրականության զարգացման մյուս փուլը: Առաջին փուլը՝ էլեկտրաստատիկան, կարելի էր համարել ավարտված: Իսկ նրա ընթացքն ու ավարտը հավերժ պետք է կապել մեկ մարդու անվան հետ, մարդ, որը «երկնքներից խլեց կայծակը, իսկ բռնակալներից՝ տիրակալությունը»:*

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*






# ԳՈՐԳԵՐԻ ԳԱՂՏՆԻՔԸ

Այն տների մասին, որտեղ ապրում են ծեր կանայք, ասում են. «Նրանք հին տուն են»: Դա շատ բան է նշանակում: Ուրեմն տանը բազմաթիվ խորհըրդավոր անկյուններ կլինեն, սնդուկներ՝ լի դարասկզբի հարսանեկան զգեստներով, պատերից կախված կլինեն գորգեր ու կարպետներ: Նայելով գորգերի հիանալի նախշերին, դժվար է հավատալ, որ դրանք մեր այն տատիկների ձեռքի գործն է, որոնք ոչ մի տեղ չեն սովորել, շատերն անգամ կարդալ չգիտեն, իրենց թոռնիկների համար նույնիսկ շնիկ նկարել չեն կարող:

Մի քանի տասնյակ տարով ետ գնանք ու պատկերացնենք այդ հարսանեկան շորերը նոր հանած հարսներին, որոնք իրենց կեսուրների հետ դազգահի առջև նստած գորգ են գործում, ընդգրկվելով կախարդական, դարավոր մի գործողության մեջ: Այդ գորգը պետք է դառնա ընտանիքի ամենաարժեքավոր իրը, դրա վրա պետք է խաղան երեխաները, հետո նրանց երեխաները, և գորգը պետք է փոքր-ինչ խունանա, մաշվի, պահելով սակայն հրաշալի նախշերի կախարդական աշխարհը: Ու մի օր էլ, հասակ առած մարդիկ, որ երեխա ժամանակ խաղացել են այդ գորգերի վրա, կարող է պատահել, որ կտրտեն այդ գորգերը, հատակ փայլեցնելու ոտնաշորեր սարքեն, դրանով մի նվիրական ավանդ անհետացման մատնելով: Որպեսզի այդ տեղի չունենա, պետք է իմանալ ու գնահատել գորգերը, նույնիսկ հնամաշ գորգերը, պետք է փոքր-ինչ խորանալ նրանց պատմության մեջ:

Գորգերի զարդանախշերը, որոնցով առաջին հա-

յացքից պարզապես կարելի է միայն զմայլվել, մեր առաջ անհետացած մի աշխարհ են բացում: Շատ հին նախշեր են դրանք, այժմ գորգ գործողներից ոչ մեկը չգիտե դրանց իսկական նշանակությունը: Չեն իմացել նաև նրանց տերերը: Մինչդեռ քննել գորգերի հորինվածքը նույնքան հրապուրիչ է, որքան, խորանալ երկրի ընդերքի կամ տիեզերական տարածության ուսումնասիրման մեջ: Ահա մի գորգ, որին «բզեզագորգ» անունը շատ է սազում: Իսկապես, այստեղ, ինչպես կենդանաբանության դասագրքի էջերում, միայն շատ ավելի գեղեցիկ, գրավիչ, տրված է բզեզի զարգացումը բոժոժից մինչև թրթուր, հարսնյակից մինչև բզեզ: Միջատները պատկերված են երկրաչափական ժլատ գծերով, սակայն դրանից նրանց պատկերավորությունը բնավ չի տուժել:

«Բզեզագորգի» շատ տարբերակներ կան: Ինչո՞ւ են մեր նախնիները այդքան շատ տեղ տվել այդ միջատներին: Բզեզը շատ հին ժողովուրդների, մանավանդ եգիպտացիների մոտ, պաշտամունքի առարկա էր: Եգիպտոսում քրմերը բզեզների վարքով գուշա-



կություններ էին անում, մեծ տարածում էին գտել բզեզի նմանվող գույնզգույն զարդարանքները, կամ, այլ խոսքով ասած, սկարաբեոիդները: Այժմ էլ հուշանվերների խանութներում կարելի է տեսնել նման զարդեր, որոնք հին ընդօրինակություններ են: Մենք դիմեցինք Եգիպտոսի օրինակին, որովհետև նրա յոթհազարամյա պատմությունը մեզ է հաղորդվել հիերոգլիֆներով, հնագույն տաճարներով, բուրգերով: Այդ ժամանակներում Հայաստանի մասին դեռ ոչինչ հայտնի չէր, մինչդեռ մեր գյուղերում պահպանված այդ գորգերը օգնում են պարզելու, որ բզեզի պաշտամունքը է եղել նաև մեր նախահայրերի մոտ: Չէ՞ որ գորգերի նախշերը դարերի ընթացքում չեն փոխվել, աղջիկը գործել է սովորել իր տատից, նա էլ՝ իր տատից: Մարդիկ բզեզին պաշտել են, որովհետև նրա հետ է կապված բնության մայիսյան զարթոնքը, ծաղկումը: Մարդկանց ուշադիր հայացքից չեն վրիպել գոմաղբի անշուք բզեզները, առանց որոնց բնության մեջ շրջանառությունը պարզապես անհնարին կդառնար:

Գորգերի ամենատարածված ձևերից է «գաթաներով» գորգը: Նրա վրա երկու կամ երեք կլոր կամ երկրաչափական նախշեր են, հիանալի մանրամասներով: Դրանք խորհրդանշում են արևը, կյանքի հավերժությունը, կապ ունեն նաև կրակի պաշտամունքի հետ: Ահա և մի այլ գորգ, մեջտեղում խնձորենու ծաղկած ճյուղ է, շուրջը՝ թիթեռներ: Գորգը երիզող գոտին զարդարված է կենաց ծառերով, որը հնագույն մարդկանց պատկերացմամբ եղել է անմահության աղբյուր: Որտեղի՞ց են ծանոթ մեզ այս գորգի կենաց ծառերը: Դե իհարկե... Հար և նման նախշեր, առանց որևէ փոփոխության, հանդիպում են ուրարտական կենտրոն Էրեբունիի որմնանկարների վրա:

Այժմ բազմաթիվ արվեստագետներ, նկարիչներ ուսումնասիրում են այդ գորգերի զարդանախշերը, արտանկարում, դրանց հիման վրա ստեղծում նոր, հիանալի գորգերի էսքիզներ: Հայաստանի տարբեր շրջաններում կան գորգագործական ֆաբրիկաներ, որոնք ունեն ժամանակակից սարքավորումներ և ամեն տարի երկրագնդի տարբեր կողմերն են առաքում հարյուրավոր հայկական գորգեր: Եվ դրանք ամենուրեք ընդունվում են ուրախությամբ: Հայաստանը գորգի հայրենիքներից մեկն է: Հնում հայտնի են եղել և՛ պարսկական, արաբական, չինական գորգերը, բայց հայկականը ունեցել է ոսկու արժեք: Դեռևս հազար տարի առաջ մի արաբ հեղինակ, թվելով Կիլյան թագավորի հարստությունները, բացականչում է. «Նա ուներ նույնիսկ հայկական գորգեր...» Մի ուրիշ հեղինակ, արդեն եվրոպացի, վկայում է. «Լայն պահանջարկ ունեն այն պարսկական գորգերը, որոնք նման են հայկականին»: Ցավոք սրտի, այդ հին շրջանից շատ քիչ գորգեր են պահպանվել:

Այժմ կրկին վերադառնանք այն տխուր պատմությանը, երբ գեղեցիկ նախշերով գորգը մաշվելուց հետո, կտրտվում, օգտագործվում է այլ նպատակով: Դա ընտանիքի ծննդյան վկայականն էր, նրա հնության ապացույցը: Պետք էր այդ գորգը հանձնել Հայաստանի պատմության թանգարանին: Այնտեղ անհույս վիճակում գտնվող շատ գորգեր հմուտ վերականգնողների ձեռքերով կյանք են առել, իսկ այդ գորգերը գործող տատիկների անունը գրվել է դրանց տակ ի հպարտություն նրանց որդիների, թոռների:

Շատերի տներում կան հին գորգեր, որոնց վրա տանեցիներն ուշադրություն չեն դարձնում: Մինչդեռ պետք է ուշադիր լինեն, համոզվելու համար, թե ինչքան գեղեցիկ, մեկը մյուսից տարբեր են դրանց նախշերը:

Խնամքով պետք է վերաբերվել տան հին գորգերին, որովհետև դրանք ոչ միայն տան, այլև մեր ժողովրդի հպարտությունն են: Սիրելի՛ ընթերցողներ, մանրամասն նկարեք ձեր տներում եղած հին գորգերը, այլև տնայնագործ, հին իրերը, և ուղարկեք ամսագրին: Զրուցեք ձեր տատիկների հետ, որոնց ձեռքի գործն են դրանք, և նրանց մասին գրեք փոքրիկ պատմվածքներ: Լավագույն նկարները և պատմությունները կտպագրվեն ամսագրի էջերում: Այդպիսով մենք ավելի շատ բան կիմանանք այդ շատ հին և հավերժ երիտասարդ արվեստի մասին:

*ՎԱՀՐԱՄ ԹԱԹԻԿՅԱՆ*

# ՋՈՒՆԳԼԻՆԵՐԻ ԲԺԻՇԿԸ

(Ալբերտ Շվեյցերի ծննդյան 100-ամյակի առթիվ)



Հիվանդանոցը գտնվում էր Օհովե գետի ձախ ափին: Բժիշկ Շվեյցերը Լամբարեն գնում և վերադառնում էր հին թիանավով: Ավագ աշխատակցուհի Հալի Սիլվիերի հետ նստում էր նավակի ետնամասում, և չորս նեգր տղամարդիկ թիավարում էին գետի պղտոր ալիքների վրա: Շվեյցերը մերժեց մոտորանավակը, իսկ սա դեռ այն թիանավն է, որով նա առաջին անգամ լողաց դեպի Օհովեի կղզիներից մեկը, ուր այժմ գտնվում է նրա հիվանդանոցը:

Այդ օրից անցել է ամբողջ կես դար: 1913 թվականի գարնանը նա ոտք դրեց Գաբոն՝ Ֆրանսիայի ամենահետամնաց գաղութը: Շվեյցերը նայում է Օհովեի ալիքներին և հիշում հեռավոր Էլզասը՝ Հյունսբախ գյուղը, որտեղ անցել է իր մանկությունը: Դեռ այն տարիներից նրա մեջ դաստիարակվել է բարի լինելու, ուրիշին օգնելու բնավորությունը: Հիշում է, թե ինչպես մի անգամ երեխաները գոռում-գոչյունով վազում էին մի թափառաշրջիկ ծերունու ետևից: Երբ ինքն էլ մյուսների նման ցանկացավ ծգել ծերունու փեշից, հանկարծ տեսավ նրա հայացքը: Այդ հայացքը լուռ էր, վշտահար ու ներողամիտ: Ալբերտն զգաց, որ իրենք վատ բան են անում, շատ վատ բան: Եվ մինչև կյանքի վերջը Շվեյցերը չըմոռացավ այդ հայացքը:

Ծագումով գերմանացի, սակայն Ֆրանսիայի քաղաքացի, Ալբերտ Շվեյցերը բարձր կրթություն ստացավ և դարձավ հայտնի փիլիսոփա: Նա նաև հրաշալի երգեհոնահար էր և ելույթներով հանդես է եկել Եվրոպայի տարբեր երկրներում: Միաժամանակ Շվեյցերը երաժշտագետ էր, բազմա-

# ԲԱԼԼԱԴ ՁԻՈՒ ՄԱՍԻՆ

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Կռվից եմ հիշում, ոչ թե հեքիաթից.
Ցածրիկ էր, բայց և մկանուտ ու քաջ,
Նա չէր վախենում արկից ու շանթից,
Անցնում էր մեզ հետ ճահճուտը կանաչ:



Ձին, մեր խելոք ձին, այդ լա՞վ կենդանին,
Որ քարշ էր տալիս մեր հրետանին:

Քաղց ու հոգնություն, տանջանքներ պես-պես,
Եվ ո՛չ մի տրտունջ, ո՛չ մի համոզել,
Նա այնպես զգում, հասկանում էր մեզ,
Միայն թե լեզու չուներ, որ խոսեր:
Ձին, մեր խելոք ձին, այդ լավ կենդանին,
Որ քարշ էր տալիս մեր հրետանին:

Եվ մի առավոտ, Վոլգայան աղեղում,
Երբ գետի ջուրը թույլ ոսկեզօծվեց,
Թշնամին անհեղ կրակ էր տեղում,
Արկի մի բեկոր... և մեր ձին զոհվեց:
Ձին, մեր խելոք ձին, այդ լավ կենդանին,
Որ քարշ էր տալիս մեր հրետանին:

Արցունքի երկու կաթիլները ջինջ
Աչքերից դանդաղ գլորվեցին ցած:
Մի վերջին շարժում ու մի թույլ խրխինջ,
Եվ անշարժացավ նա արձանացած:
Ձին, մեր խելոք ձին, այդ լավ կենդանին,
Մեր ընկերը քաջ ու հավատարիմ:

թիվ գրքերի հեղինակ, որոնցից ամենահաջողակավորը «Իոհան Սեբաստիան Բախ» բարձրարժեք ուսումնասիրությունն է:

Թվում էր, թե կյանքը այդպես էլ կշարունակվեր, եթե 1905 թվին Շվեյցերը թերթերից մեկում մի հայտարարություն չկարդար այն մասին, որ Աֆրիկայի հետամնաց ու հիվանդություններից տառապող բնիկներին բժիշկներ են հարկավոր: Նրա համար միանգամից պարզ դարձավ իր կյանքի նպատակը: Ամբողջ ութ տարի բժշկություն ուսումնասիրեց և ստանալով դոկտորի դիպլոմ՝ ուղևորվեց Գաբոն, Լամբարեն բնակավայրը:

Հենց սկզբից էլ նրան հրապուրեց Գաբոնի գեղեցիկ բնությունը, բայց անտառի մթությունից լսվող ձայները, թունավոր միջատները, Օհովեի ալիքներում վխտող կոկորդիլոսներն ու գետաձիերը սարսափ էին առաջացնում: Սակայն առաջին դժվարությունները չհուսահատեցրին: Նա եռանդով գործի անցավ և կառուցեց հիվանդանոց: Նեգր հիվանդները անընդհատ գալիս էին «զարմանալի կախարդի» մոտ: Ստիպված էր նոր հիվանդանոց կառուցել, ստեղծել ընդունարան և դեղատուն: «Ջունգլիների բժիշկը» շուտով դարձավ Գաբոնի ամենանշանավոր մարդը:

Ալբերտ Շվեյցերը մեծ սեր էր ցուցաբերում առանձնապես երեխաների նկատմամբ: Նեգր երեխաները հիվանդանոց էին գալիս ոչ միայն բուժվելու, այլ երբեմն պարզապես ապաստան ու սնունդ գտնելու: Ապաքինվելուց հետո, նրանք գրագիտություն և բժշկական գիտելիքներ էին ստանում Շվեյցերի օգնականների մոտ:

Նրա հռչակը տարածվել էր ողջ աշխարհում: Տարբեր երկրներ նրան շնորհում էին պատվավոր կոչումներ ու շքանշաններ, իսկ 1953 թվականին արժանացավ Նոբելյան մրցանակի: Որպես այդ ամենի պատասխան, բարձրահասակ, խիտ բեղերով և սպիտակ խալաթով բարի մարդը համեստորեն ձեռքերն էր տարածում.

— Ես միայն օգնում եմ ինձ նմաններին, բուժում նրանց, իսկ դա չէ՞ որ բոլորիս պարտքն է:

Գաբոնի անկախություն ստանալուց հետո, Ալբերտ Շվեյցերը չհեռացավ Լամբարենից: Նա նույն եռանդով աշխատում էր, և երախտապարտ ժողովուրդը Ալբերտ Շվեյցերին համարեց նոր երկրի առաջին քաղաքացին: Նա մահացավ 1965 թվին: Նրա հիմնադրած հիվանդանոցը շարունակում է գործել և կրում է Շվեյցերի անունը:

ՎԱԶԳԵՆ ՍԱՖԱՐՅԱՆ

# ՏԱՍՆԵՐԵՔԱՄՅԱ ՉԵՄՊԻՈՆԸ

Շախմատի գծով մայրաքաղաքի այս տարվա չեմպիոնը դարձավ Երևանի № 118 միջնակարգ դպրոցի 6-րդ դասարանի աշակերտուհի, տասներեքամյա Անուշ Նալոյանը:

Նրա շախմատային կենսագրությունը սկսվել է երկու տարի առաջ, երբ եղբոր՝ Արմենի հետ



միասին սկսեց հաճախել Երքաղժողկրթբաժնի շախմատի մասնագիտացված դպրոց: Ուսուցիչն է նշանավոր էտյուդիստ, շախմատային կոմպոզիցիայի միջազգային գրոսմայստեր Հենրիկ Գասպարյանը:

Երևանի չեմպիոն դառնալուց հետո, Անուշն սկսեց լրջորեն պատրաստվել հանրապետության պատանեկան առաջնության մրցումներին:

Գարնանային արձակուրդի օրերին դպրոցականներից շատերը հանգստանում էին, հեռավոր ու մոտիկ էքսկուրսիաների գնում, բայց չէին թողնում հետաքրքիր ներկայացումները, մասնակցում էին զվարճալի միջոցառումների: Իսկ Անուշը հակված շախմատի տախտակի վրա, խաղում էր ինքն իր հետ, շախմատի սև ու սպիտակ ֆիգուրների միջև ծագող հանելուկային վեճերը փորձում լուծել սրամիտ, համառ դիմադրությամբ:

Ահա և պատասխանատու մրցումները:

Երկու հաղթանակ իրար հետևից: Իսկ երրորդում պարտվեց:

— Երբ այդ օրը տուն եկավ, բոլորովին ընկճված չէր,— հիշում է Արամը,— ուղղակի ասաց, որ պարտվել է:

Իսկ Արմենը, որ ներկա էր եղել խաղին, նույնիսկ կատակեց.

— Գիտե՞ս, հայրի՛կ, մրցակիցն ավելի էր հուզվել, քան Անուշը: Մրցակիցը ուրախությունից շփոթվել էր և անծանոթ մի մարդ ուզում էր նրան մխիթարել, կարծելով, թե նորից հաղթողը Անուշն է:

Ծիծաղեցին, ուրախացան: Հայրն ասաց, որ անհաջողությունից չի կարելի ընկճվել:

Եվ Անուշը նորից շախմատի տախտակին հակվեց:

Գարնանային արձակուրդի վերջին օրերին նա կարողացավ ետևում թողնել բոլոր առաջին կարգայիններին և 9 հնարավորից վաստակելով 7 միավոր, դարձավ պատանիների մեջ հանրապետության չեմպիոն:

ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

«Պիոներիթ փոստից

# ՄԱՅՐԸ

Պայծառ առավոտ էր գյուղում:

Մեծերը, փոքրերը, երկրի տարբեր քաղաքներից եկած դղղեցիները շտապում էին գյուղից դուրս, այնտեղ, ուր կանգնած էր Հայրենական մեծ պատերազմում զոհված համագյուղացիների հիշատակը հավերժացնող կոթողը: Խմբված բազմության մեջ մի շշուկ անցավ. «Դարաղզ նանն է գալիս... Դարաղզ նանը...» Եվ բոլորը լռեցին ու հարգանքով ճանապարհ տվին եկող ծեր կնոջը: Նա դողդոջ քայլերով մոտեցավ, կանգնեց կոթողի մոտ ու դիմելով հավաքվածներին, ասաց.

— Պատերազմը տարավ իմ չորս որդիներին, սա նաև իմ չորսի հուշարձանն է...

Նրան շրջապատեցին գյուղի ղեկավարները, խնդրեցին իջեցնել արձանը ծածկող սավանը: Նա իջեցրեց և երևաց պատվանդանին կանգնած հպարտ զինվորը՝ մի ձեռքին հրացան, մյուս ձեռքը հաղթական վեր բարձրացրած: Մարդիկ լռությամբ մոտեցան հուշարձանին, խոնարհեցին գլուխները, ծաղկեպսակներ դրին պատվանդանին:

Այժմ հուշարձանը վերածվել է մի սրբավայրի: Այստեղ են գալիս որդեկորույս մայրերն ու հայրերը, ամուսիններ կորցրած կանայք, դպրոցականներ՝ պսակներ դնելու:

*ԱՐԵՎԻԿ ԴՈՒՐՅԱՆ*

*Շամշադինի շրջանի Ղզլի գյուղի 9-րդ դաս. աշ.*



*ՄԱՐԿՈՍՅԱՆ ԱՐԱՅԻԿ, 14 տ.*
*Միածնի շրջան, Մուսալեռան անվ. 3-րդ սովխոզ*




## ՈՉ ՄԻ ՕՐ՝ ԱՌԱՆՑ ՆՈՐ ԲԱՌԻ



*Շվեդերեն լեզվում կա 160 հազար բառ: Այդ վկայում է Շվեդիայի գիտությունների ակադեմիայի վերջերս հրատարակած բառարանը: Հետաքրքիր է, որ 1889 թվին շվեդերեն 40 հազար բառ կար, իսկ 1932 թվին՝ 100 հազար: Գիտնականները հաստատում են, որ լեզվի տարեկան միջին աճը կազմում է 1200 բառ:*

## ԸՆԿԵՐՈՒՀԻ՝ ԿՐԻԱՅԻ ՀԱՄԱՐ

*Պարզվում է, որ մեր օրերում դժվար է լավ հարսնացու գտնել... կրիայի համար: Ամեն ինչ սկսվեց այն բանից հետո, երբ կենդանիների պաշտպանության շվեյցարական ֆոնդի գիտա-հետազոտական կայանը Գալապագոսյան կղզիներից մեկում գտավ հազվագյուտ, վաղուց արդեն անհետացած համարվող կրիայի մի տեսակ: Կղզիների անվանումը առաջացել է իսպանական գալապագո բառից, որը կրիաների տարատեսակներից մեկի անունն է: Կրիաների կղզիները բնության եզակի անկյուններից է, նշանավոր արգելանոց: Եվ ահա հայտնագործությունը. կենդանի է հսկա կրիայի տասնմեկերորդ տեսակը: Տասը տեսակ կրիաներ գտնվում են մարդու խնամքի տակ, իսկ խեղճ տասնմեկերորդը կմահանա և ժառանգներ չի թողնի, եթե շտապ նրա համար կյանքի ընկերուհի չճարեն: Փեսացուն երիտասարդ է՝ ընդամենը 50 տարեկան: Շվեյցարական ֆոնդը դիմել է բոլոր նրանց, ովքեր հնարավոր է որ ունեն այդ տեսակ կրիա, և խնդրել է տեղյակ պահել: Մի պայման կա միայն. «հարսնացուն» չպետք է 200 տարեկանից մեծ լինի:*

## ՔԱՐԱՆՁԱՎՆԵՐԻ ՑՈՒՑԱԿԸ

*Ավստրիացի գիտնականները, կազմում են երկրի ստորգետնյա բոլոր այն քարանձավների մանրամասն ցուցակը, որոնց երկարությունը 20 կիլոմետրից ավելի է: Այս աշխատանքը կօգնի նյութեր հավաքել երկրի կեղևում դատարկ տարածություններ առաջանալու օրինաչափությունները ուսումնասիրելու համար: Պարզվել է, որ ամենաերկար քարանձավը գտնվում է ԱՄՆ-ի Կենտուկի նահանգում:*

*Նշանավոր Մամոնտյան քարանձավի երկարությունը՝ 252 կմ է:*



## Ա՞Յ ՔԵԶ ՌԵԿՈՐԴ

*Աշխարհի նոր ռեկորդ սահմանեց Յոհանեսբուրգ քաղաքի բնակիչ, երեսուներկուամյա Տրևոր Կրուգերը: Նա երեսունվեց օր վանդակում ապրեց թունավոր օձերի հետ, չորս օրով գերազանցելով իր հայրենակից Վիմ Դովի ցուցանիշը:*

## ԲԱՐԴ ՎԻՐԱՀԱՏՈՒԹՅՈՒՆ

*Երկար ժամանակ է, ինչ Կլիվլենդի (ԱՄՆ) քաղաքային հիվանդանոցում մի շարք վիրահատություններ են կատարում՝ մի կապիկի գլուխը մյուսին պատվաստելու նպատակով: Վերջին փորձերի շնորհիվ՝ կապիկի մարմնին «միացրած» նոր գլխի կենսունակությունը պահպանվում է մի շաբաթ: Կապիկը շարունակում է տիրապետել հոտառությանը, լսողությանը, տեսողու-*

## ԻՆՉՊԵՍ ԲՈՒՄԵՐԱՆԳ






Վերցրեք ամուր հաստ թուղթ և վրան գծեք մի քառակուսի ցանց, որի կողը հավասար լինի 50 մմ: Այնուհետև շատ ուշադիր, նկարից թղթի վրա փոխանցեք բումերանգի ուրվագիծը և կտրեք: Դուք ստացաք ձևանմուշ (շաբլոն): Ստուգեք ուսերի համաչափությունը, ծռելով ձևանմուշը OA գծի ուղղությամբ: Ուսերի ուրվագծերը պետք է լրիվ համընկնեն: Բումերանգ պատրաստելու լավագույն և, թերևս, ամենամատչելի նյութը բազմաշերտ ֆաներան է՝ 8—10 *մմ* հաստությամբ:

Սոսնձեք ձևանմուշը ֆաներայի վրա այնպես, որ ֆաներայի արտաքին շերտերը ուղղահայաց լինեն OA առանցքին և սղոցով կտրեք բումերանգի ուսերի ուրվագիծը: Հետագա մշակումը կատարվում է միայն այն կողմից, որը ցույց է տրված գծագրում: Մյուս կողմը պետք է հարթ մնա: Տափակ խարտոցի և ծողակարկինի օգնությամբ աշխատեք զգուշությամբ փոքրացնել բումերանգի հաստությունը՝ մեջտեղից դեպի ծայրերը գնալով:

Այսքանից հետո անցեք ձևավորմանը: Դա, թերևս, աշխատանքի ամենապատասխանատու մասն է: Թիթեղից կամ բարակ ֆաներայից հակաձևանմուշ կտրեք (անտիշաբլոն) նկարում նշված ամեն մի հատվածի համար: Ձևավորումը կարելի է կատարել կիսակլոր և տափակ խարտոցներով, այնուհետև ամբողջ մակերեսը պետք է մաքրել հղկաթղթի օգնությամբ: Բոլոր սուր եզրերը անհրաժեշտ է կլորացնել: Ամեն մի ուսի մակերե-

թյանը, ցավ է զգում և ընդունակ է շարժումներ կատարելու:

Չնայած վիրահատության մեթոդիկան առաջին փորձերի համեմատ կատարելագործվել է, այնուհանդերձ մինչև օրս էլ մնում է այնքան բարդ, որ 18 բժիշկների մասնակցությամբ տևում է մոտ 6 ժամ:

## ՈՒՐԱՆ՝ ԾՈՎԻ ՋՐԻՑ

Ծովային ջրից ուրան ստանալու եղանակ են գտել ճապոնացի գիտնականները: Կլանող քամոցի օգնությամբ ծովային ջրից անջատում են զանազան մետաղներ, այդ թվում ուրանի օքսիդներ: Գիտնականների կարծիքով, իրենց առաջարկի արդյունաբերական իրացումը հնարավորություն կտա առաջին քայլն անել Ճապոնիան միջուկային վառելիքով ապահովելու գործում: Նախնական հաշվումների համաձայն, Համաշխարհային օվկիանոսում կա մոտ 4 միլիարդ տոննա ուրան:

## ՊԱՏՐԱՍՏԵԼ

սը ուշադիր մշակեք. դրանով է որոշվելու բումերանգի թռիչքային որակը:

Հաճախ ստուգեցեք հակածևանմուշով ստացվող հատման ճշգրտությունը լույսի տակ: Չափազանց կարևոր է նաև ճշգրիտ հավասարակշռել բումերանգը: Դրա համար բումերանգը կախեք թելից, վերջինս ամրացնելով 0A հատվածի վրա. այս դիրքում ուսերից ոչ մեկը չպետք է գերակշռի մյուսին: Եթե մի ուսը մյուսից ծանր ստացվի, անհրաժեշտ է պարզել պատճառը: Դա կարող է լինել կամ սխալ մշակումից, կամ ֆաներայի ոչ միատարրությունից: Եթե առաջին դեպքում կշռի տարբերությունը վերացվում է ծանր ուսը սղոցելով, ապա երկրորդ դեպքում՝ թեթև ուսի ծայրում կպցրեք արճճե ոչ մեծ կոճակ: Կոճակի խցման տեղը խնամքով ուղղեք, հավասարեցնելով ուսի մակերեսի հետ:

Պատրաստի բումերանգը մի քանի անգամ ներկեք վառ գույնի յուղաներկով կամ արծնապակյա (էմալե) ներկով: Չպետք է մոռանալ, որ թռչող բումերանգը որոշակի վտանգ է ներկայացնում ոչ միայն գցողի, այլև շրջապատի մա դկանց համար: Ավելի լավ է բումերանգը բաց թողնել մեծ ու բաց հրապարակում: Եվ որպեսզի այն ավելի լավ դիտվի, ուսերը շերտ-շերտ ներկեք տարբեր գույներով: Անհրաժեշտ ջրադիմացկունությունը ապահովելու համար բումերանգի մակերեսը ծածկեք անգույն լաքով:

Վ. ԶԱՎՈՐՈՏՈՎ (ինժեներ)

Լույս է տեսնում 1928 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 8 օգոստոս 1975 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԲԱԳՐԱՏ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—37—90

ՎՖ 05668: Պատվեր 1623: Տպաքանակ՝ 79500: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 28/VII 1975 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:



## «Ելի՛ր, երկի՛ր իմ անծայրածիր» մրցույթի հաղթողները



ՄՈՎՍԻՍՅԱՆ ԹԵՐԵԶԱ, 12 տ., Բջնի



ՄԻՔԱՅԵԼՅԱՆ ԿԱՐԵՆ, 11 տ. Արթիկ



ՀԱԿՈԲՅԱՆ ԳԱԳԻԿ, 12 տ., Բջնի



## ԺԱՄԱՆՑ

1. Թերակղզի՝ Եվրոպայում: 2. Ծիանանյութ: 3. Ձուկ որսալու հարմարանք: 4. Հայկական անուն: 5. Նավթի հանքավայր՝ Արևմտաեվրոպական հարթավայրում: 6. Մոլորակ: 7. Հրաբուխ՝ Սիցիլիա կղզում: 8. Պետություն՝ Լատինական Ամերիկայում: 9. Հովհ. Թումանյանի պոեմը: 10. Սովետական Միության հանրապետության մայրաքաղաք: 11. Շոտլանդացի գրող: 12. Մորթատու կենդանի: 13. Ֆրանսիացի փիպասանուհի: 14. Մետաղ:

Հարցերին ճիշտ պատասխանելու դեպքում շրջանագծերից մեկում կկարդաք հայ ժողովրդական առած:

*Կազմեց ՄԱՐԻՆԵ ԽԱՉԱՏՐՅԱՆԸ*

...Ս 77806